ISSN 0130—8114



ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1981 4

# Մեր հեղինակներին

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս
ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենա-
գրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդ-
վածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի
տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հա-
յաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան
ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հե-
ղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը,
հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդ-
վածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ
է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկա-
վարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչնե-
րի աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղ-
վածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատու-
թյունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործ-
ված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդ-
վածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված
լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4

ԱՊՐԻԼ, 1981

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический
журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


Ընկեր Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ճառը Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցության XVI համագումարում . . . . . . . . . 3

ՍՄԿԿ Կենտկոմում, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդում, ՀԱՄԿԽ-ում և ՀամԼԿԵՄ Կենտկոմում

Տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու և գերակատարելու համամիութենական սոցիալիստական մրցության մասին . . . . . . . . . . 9

Լ. ԲՐԵԺՆԵՎ— Երևանի մետրոպոլիտենի առաջին գծի կառուցման մասնակիցներին . . . . . . . . . . 15

Լ. ԲՐԵԺՆԵՎ— Արփա—Սևան թունելի հորատանցողներին, շինարարներին, մոնտաժողներին, նախագծողներին, կառույցի բոլոր մասնակիցներին 16

ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄ ԵՆՔ ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

ԱՌԱՋՆՈՐԴՈՂ— Ստեղծարար գործունեության ծրագիր . . . . 17

Հ. Ա. ՕՀԱՆՅԱՆ— Մեր գործերն ու հեռանկարները . . . . . 27

ԱՍՅԱ ԽԱՆԱՆՅԱՆ— Ուսուցչի վեհ կոչումը . . . . . . . 33

ՀԵՆՐԻԿ ԹՈՒՄԱՆՅԱՆ— Խոսք XXI դարի քաղաքացուն . . . . 37

Ա. Հ. ԽԻԼԻԿՅԱՆ, Վ. Կ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ— Տնտեսական մեխանիզմի կատարելագործման պայմանը . . . . . . . . . 41

Ա. Հ. ՉԻԼԻՆԳԱՐՅԱՆ— Մայր բնության հոգսերը մեր հոգսերն են . . 47

Ե. Ք. ՄԱՆԱՐՅԱՆ— Փոքրերի թատրոնի մեծ խնդիրները . . . . 54

ՀԱՎԵՐԺ ԿԵՆԴԱՆԻ ԼԵՆԻՆԸ
(Ծննդյան 111-ամյակի առթիվ)

Ե. Ռ. ԼԵՎԻՏԱՍ— Անմոռաց օրեր . . . . . . . . . 58

Ա. Գ. ԱԴՈՅԱՆ— Արգասալի նախաձեռնություն . . . . . . . 60

Վ. Ե. ՄԱԿԱՐՅԱՆ— Ռուս դասական երգիծանքը Վ. Ի. Լենինի երկերում . 70

Ռ. Ա. ՂԱԶԱՐՅԱՆ— Ինֆորմացիայի աղբյուրների օգտագործումը առաջնորդի աշխատություններում . . . . . . . . . 76

Հ. Ն. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ.— Ն. Կ. Կրուպսկայայի նամակները Վ. Մ. Կասպարովին (1915—1917) . . . . . . . . . . 80

ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

Մ. Վ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ.— Անվեհեր կոմունարը . . . . . . 87

Ա. Մ. ՍԱՔԱՆՅԱՆ— Անմնացորդ նվիրումով . . . . . . . 95


ԵՐԵՎԱՆ ✦ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ

Речь товарища Л. И. БРЕЖНЕВА на XVI съезде Коммунистической партии Чехословакии . . . . 3
В ЦК КПСС, Совете Министров СССР, ВЦСПС и ЦК ВЛКСМ
О Всесоюзном социалистическом соревновании за успешное выполнение заданий одиннадцатой пятилетки 9
Л. БРЕЖНЕВ — Участникам строительства первой линии Ереванского метрополитена . . . . 15
Л. БРЕЖНЕВ — Проходчикам, строителям, монтажникам, проектировщикам, всем участникам сооружения тоннеля Арпа-Севан . . . . . . . 16

ПРЕТВОРЯЕМ В ЖИЗНЬ РЕШЕНИЯ XXVI СЪЕЗДА КПСС

ПЕРЕДОВАЯ — Программа творческого созидания . . 17
Г. А. ОГАНЯН — Наши дела и перспективы . . . 27
АСЯ ХАНАНЯН — Высокое звание учителя . . . 33
ГЕНРИК ТУМАНЯН — Слово гражданину XXI века . . 37
А. Г. ИКИЛИКЯН, В. К. ГАБРИЕЛЯН — Условия совершенствования хозяйственного механизма . . . 41
А. А. ЧИЛИНГАРЯН—Заботы матери-природы—наши заботы 47
Е. Х. МАНАРЯН — Большие задачи театра маленьких . 54

ВЕЧНО ЖИВОЙ ЛЕНИН

(к 111-й годовщине со дня рождения)

Е. Р. ЛЕВИТАС — Незабываемые дни . . . . . 58
А. Г. АДОЯН — Плодотворная инициатива . . . . 60
В. Е. МАКАРЯН — Русская классическая сатира в произведениях В. И. Ленина . . . . . . . 70
Р. А. КАЗАРЯН — Использование источников информации в трудах вождя . . . . . . 76
А. Н. КАРАПЕТЯН — Письма Н. К. Крупской В. М. Каспарову (1915—1917) . . . . . . 80

ЗНАМЕНАТЕЛЬНЫЕ ДАТЫ

М. В. АРЗУМАНЯН — Бесстрашный коммунар . . . 87
А. М. САКАНЯН — Беззаветной преданностью . . 95





# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ ՉԵԽՈՍԼՈՎԱԿԻԱՅԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ

Թանկագին ընկեր Հուսա՛կ:

Թանկագին ընկերնե՛ր:

Թույլ տվեք Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցության XVI համագումարի պատգամավորներին, երկրի բոլոր կոմունիստներին ու աշխատավորներին բարեկամության ու եղբայրության խոսքեր հաղորդել պայքարի ձեր ընկերների՝ սովետական կոմունիստների, մեր ողջ ժողովրդի կողմից: (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Իմ մասին կասեմ, որ ինձ համար ամեն անգամ մեծ ուրախություն է լինել Չեխոսլովակիայում: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Ինձ համար արդեն մի տեսակ հոգեհարազատ է դարձել ձեր սքանչելի երկիրը: Ինձ վիճակվեց առաջին անգամ նրա հողը ոտք դնել գրեթե քառասուն տարի առաջ մեր բանակի զորամասերի հետ, Լյուդվիկ Սվոբոդայի կորպուսի ռազմիկների հետ կողք-կողքի: Սա Չեխոսլովակիայի կոմկուսի արդեն չորրորդ համագումարն է, որ ինձ հանձնարարված է գլխավորել Սովետական Միության կոմունիստական կուսակցության պատվիրակությունը: Եվ ես թանկ եմ գնահատում այն, որ հնարավորություն ունեմ այս նշանավոր օրը լինելու ձեզ հետ, թանկագի՛ն բարեկամներ: (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

ՍՄԿԿ-ի պատվիրակությունը մեծ հետաքրքրությամբ լսեց Չեխոսլովակիայի կոմկուսի Կենտկոմի հաշվետու զեկուցումը, որով հանդես եկավ ընկեր Հուսակը: Անցած տարիների արդյունքների հստակ և ռեալիստական վերլուծություն, ներքին և արտաքին քաղաքականության խոշոր, բայց միանգամայն ռեալ խնդիրների առաջադրում, սոցիալիստական դեմոկրատիայի, ժողովրդական նախաձեռնության հետագա զարգացման ճշգրիտ կուրս՝ այս ամենը վկայում է, որ Չեխոսլովակիայի կոմկուսը հաստատ կանգնած է մարքսիզմ-լենինիզմի դիրքերում: (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Դա դեպի սոցիալական ու տնտեսական պրոգրեսի նոր բնագծեր տանող՝ ձեր հայրենիքի վստահ առաջընթացի ամենահուսալի երաշխիքն է:

Ընկերնե՛ր: Այս տարի դուք նշում եք նաև Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցության հիմնադրման վաթսունհերորդ տարեդարձը: Ձեր կուսակցությունը դեպի իր հոբելյանն է գնում որպես մարտական ու հասուն հասարակական ուժ, որը կուտակել է քաղաքական պայքարի, հասարակության ղեկավարման մեծ ու արժեքավոր փորձ: Այդ փորձը բուն Չեխոսլովակիայում սոցիալիստական հաջող շինարարության երաշխիքն է: Այն փոքր նշանակություն չունի նաև մյուս կուսակցությունների համար, ողջ միջազգային կոմունիստական շարժման համար:

Այդ փորձը ներառում է բուրժուական հանրապետության պայմաններում բանվոր դասակարգի առաջավոր մասի կազմակերպման նպատակին ուղղված ակտիվ քաղաքական գործունեությունը, հիտլերյան օկուպանտների դեմ մղած ընդհատակյա պայքարը, ռազմաճակատներում նրանց դեմ վարած ճակատամարտերը և ժողովրդական ապստամբությունների կազմակերպումը հանուն հայրենիքի ազատության և անկախության, հանուն նրա սոցիալական նորացման:

Հիրավի, պատմական նշանակություն ունեցավ 1948 թվականի սոցիալիստական հեղափոխության հաղթանակը: Չեխոսլովակիայի կոմկուսը, որն այն ժամանակ գլխավորում էր նշանավոր հեղափոխական Կլեմենտ Գոտվալդը, կարողացավ իր ետևից տանել քաղաքի և գյուղի աշխատավորության միլիոնավոր մասսաներին, ապահովեց խաղաղ անցումը դեպի սոցիալիզմի կառուցման ուղին: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

1968 թվականին հակահեղափոխության ուժերի դեմ տարված հաղթանակը, այն ժամանակվա իրադարձություններից տևական նշանակություն ունեցող քաղաքական հետևություններ անելու ունակությունը՝ սա նույնպես չեխոսլովակյան կոմունիստների ոչ փոքր ավանդն է համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման գործում, նրանց մեծ ծառայությունը բոլոր եղբայրական երկրների հանդեպ: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Մի խոսքով, Չեխոսլովակիայի կոմկուսը պատվով է անցել ոչ քիչ դժվարությունների ու փորձությունների միջով, բարձր պահելով իր մարքս-լենինյան դրոշը: Եվ մենք՝ ձեր սովետական ընկերներս ու զինակիցներս, ի սրտե ասում ենք՝ փա՜ռք չեխոսլովակյան կոմունիստների կուսակցությանը: (ԲՈՒՌՆ, ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Մեր առանձնակի հարգանքի տուրքը՝ Չեխոսլովակիայի կոմկուսի ականավոր ղեկավար և հանրապետության պրեզիդենտ, կոմունիստական ու բանվորական շարժման ակնառու գործիչ ընկեր Գուստավ Հուսակին: (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Լինելով կուսակցության վետերան՝ նա կարևոր դեր է խաղացել կուսակցության գործունեության բազմաթիվ վճռական փուլերում:

Այսօր Չեխոսլովակիայի կոմկուսը չեխոսլովակյան ժողովրդին վստահորեն առաջնորդում է հասուն սոցիալիստական հասարակության կառուցման ուղիով:

Ձեզ մոտ սոցիալիստաբար են լուծվում երկրի սոցիալական ու տնտեսական զարգացման արմատական պրոբլեմները: Դուք լիակատար հիմք ունեք հպարտանալու ժողովրդական մասսաների նյութական բարեկեցության՝ ՉՍՍՀ-ում ձեռք բերված մակարդակով: Հոգատարությամբ պահպանելով ձեր ժողովուրդների բազմահարուստ կուլտուրական ժառանգությունը, դուք հասնում եք գիտության, արվեստի, ժողովրդական կրթության, առողջապահության, սպորտի, այն ամենի անշեղ վերելքին, ինչը ծառայում է սոցիալիզմի գլխավոր նպատակին՝ հասարակության անդամների նյութական ու հոգևոր հարաճուն պահանջմունքների առավել լրիվ բավարարմանը, անհատի համակողմանի զարգացմանը:

Այս ամենի մեջ առկա են Չեխոսլովակիայի կոմկուսի անմոռանալի ծառայությունը, նրա քաղաքական կուրսի ճշտության և հեռատեսության վկայությունը: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Ըստ արժանվույն գնահատելով ձեր նվաճումները՝ դուք պարզորոշ տեսնում եք նաև ծագող դժվարությունները, սուր կերպով քննադատում եք եղած թերությունները, ակտիվորեն որոնում դրանց վերացման լավագույն ուղիներ: Դա ցույց են տալիս թե՛ Չեխոսլովակիայի կոմկուսի Կենտկոմի հաշվետու զեկուցումը, թե՛ համագումարում դրա քննարկման ընթացքը:

Դուք, հավանաբար, գիտեք, ընկերնե՛ր, որ իր գործունեության նկատմամբ նույնպիսի պահանջկոտ ու պատասխանատու մոտեցում դրսևորվեց նաև մեր կուսակցության վերջերս տեղի ունեցած XXVI համագումարի աշխատանքում: Այլ կերպ չի կարող լինել և չպետք է լինի: Մեր աշխատանքը զգաստորեն ու քննադատաբար գնահատել մեզ սովորեցրել է Վ. Ի. Լենինը: Եվ քանի դեռ կոմունիստները կհետևեն այդ պատգամին, նրանց համար մատչելի կլինի ամեն մի խնդիր: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Մեծ գոհունակությամբ կարող եմ ձեզ հայտնել, ընկերնե՛ր, որ ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները խոր արձագանք են գտել մեր երկրում, ջերմ հավանությամբ են ընդունվել կոմունիստների և սովետական ողջ ժողովրդի կողմից: Կուսակցության գործը համարելով իրենց հարազատ գործը, սովետական մարդիկ ձեռնամուխ են եղել կոմունիստական շինարարության՝ համագումարի նախանշած ծավալուն պլանների գործնական կատարմանը:

Սոցիալիստական համագործակցության երկրները հասուն սոցիալիզմի



հասարակության հետագա զարգացման ճանապարհին լուծում են բազմապիսի և, բնականաբար, առավել խոր ու բարդ խնդիրներ: Եվ մենք հարկադրված ենք այդ բանն անել իմպերիալիզմի առավել ագրեսիվ ուժերի հարաճուն հակազդեցության, իսկ երբեմն էլ նրանց բացահայտ թշնամական գործողությունների պայմաններում:

Այդ իրադարձության մեջ ավելի, քան երբևէ, բոլորիս հաջողության բանալին հետևյալն է: Նախ, հարկավոր է, որ մենք ինքներս աշխատենք ավելի ու ավելի լավ, ավելի արդյունավետ, ավելի կազմակերպված, զարգացնելով մեր էկոնոմիկան, կուլտուրան և սոցիալիստական դեմոկրատիան: Երկրորդ, անդուլ ամրապնդել եղբայրական երկրների միասնությունը, նրանց համակողմանի, ավելի ու ավելի խոր համագործակցությունը բոլոր բնագավառներում, առավել ռացիոնալ կերպով միավորել ուժերն ու ռեսուրսները հօգուտ մեր երկրներից յուրաքանչյուրի և ամբողջ համագործակցության:

Այս առումով արդեն շատ բան է արվում և դեռ պետք է ավելի շատ արվի, դուք դա լավ գիտեք, ընկերնե՛ր: Հատկապես պետք է շեշտել, որ մեր համակողմանի և խոր համագործակցությունը զարգանում է հետևողական սոցիալիստական հիմքի վրա՝ իրավահավասարության, փոխադարձ հարգանքի, միմյանց շահերի հաշվառման, իսկական հեղափոխական համերաշխության հիման վրա: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Դրա իսկ շնորհիվ մեր, ինչպես Լենինն է ասել՝ «սոցիալիստական կոոպերատիվը» ո՛չ միայն չի նշանակում իր մասնակիցների սուվերեն իրավունքների որևէ սահմանափակում, այլ, ընդհակառակը, նրանց համար հուսալի հենարան է ծառայում:

Վերցնենք թեկուզ այն փաստը, որ հենց Տնտեսական փոխօգնության խորհրդի շրջանակներում համագործակցելու շնորհիվ եղբայրական երկրներն այսօր կարող են բավարարել իրենց բազմաթիվ ամենակենսական տնտեսական պահանջմունքները:

Ինչպես գիտեք, նախատեսվում է համագործակցության լուրջ զարգացում գազի և երկաթի հանքաքարի արդյունահանության ասպարեզում: Չեխոսլովակիան, ինչպես և ՍՍՀՄ-ը, արդեն շատ բան են անում ատոմային էներգետիկայի ստեղծման համար: Ատոմի էներգիան հնարավորություն կընձեռի ապահովելու մեր և մյուս եղբայրական երկրների պահանջմունքների զգալի մասը: Պարզ է, որ այդպիսի մասշտաբի խնդրի մեկուսի լուծումը շատ ավելի դժվար կլիներ:

Կարելի է վստահությամբ ասել, ընկերնե՛ր, Տնտեսական փոխօգնության խորհրդի և Վարշավայի պայմանագրի կազմակերպության գործունեության մշտական կատարելագործումը համապատասխանում է սոցիալիստական համագործակցության երկրներից յուրաքանչյուրի կենսական շահերին: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Բայց մեր հաջողությունները հանգիստ չեն տալիս դասակարգային հակառակորդներին: Նրանք ջանում են անել ամեն բան, որպեսզի խանգարեն սոցիալիզմի առաջընթացը, ներսից խարխլեն այն: Դրա համար գործադրվում են բոլոր միջոցները— տնտեսական ճնշումն ու շանտաժը, ստահոդ պրոպագանդան, քծնանքն ու դեմագոգիան, աջակցությունն ու խրախուսանքը հակահեղափոխական ուժերին,— որտեղ այդպիսիք դեռ մնացել են,— և այլ քայքայիչ գործողություններ:

Այս ամենը դուք հիշում եք, ընկերնե՛ր, ձեր սեփական փորձից: Այն համոզիչ ցույց է տվել՝ ռեակցիայի պլանները հեռանկար չունեն:

Այժմ նման փորձեր են ձեռնարկվում Լեհական Ժողովրդական Հանրապետության նկատմամբ: Բայց, պետք է ենթադրել, որ լեհական կոմունիստները, Լեհաստանի բոլոր իսկական հայրենասերների աջակցությամբ, անհրաժեշտ հակահարված կտան սոցիալիստական կարգերի թշնամիների մտադրություններին, որոնք նաև Լեհաստանի անկախության թշնամիներն են, կկարողանան պաշտպանել սոցիալիզմի գործը, իրենց ժողովրդի իսկական շահերը, իրենց հայրենիքի պատիվն ու անվտանգությունը: (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նա եղել և մնում է սո-

ցիալիստական Լեհաստանի հավատարիմ բարեկամն ու դաշնակիցը: Եվ վստահ եմ, որ այս բանում մենք ընդհանուր դիրքավորում ունենք Չեխոսլովակիայի, ինչպես նաև սոցիալիստական համագործակցության մյուս երկրների հետ: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Իր զարգացման խնդիրները արտաքին բարդ պայմաններում է լուծում Կուբայի պանծալի հանրապետությունը՝ սոցիալիստական պետությունների համագործակցության անկապտելի մասը: Սովետական Միությունը հաստատ ու անշեղորեն պաշտպանում է և կպաշտպանի եղբայրական կուբայական ժողովրդին: (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Մենք ի սրտե նրան հետագա հաջողություններ ենք մաղթում սոցիալիստական շինարարության գործում, մաղթում ենք խաղաղություն և բարգավաճում: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Ընկերնե՛ր: Պաշտպանելով մեր սոցիալիստական համագործակցությունը՝ մենք դրանով իսկ պաշտպանում ենք ժողովուրդների ամենաանգնահատելի հարստությունը՝ խաղաղությունն ու անվտանգությունը: Դա այդպես է, որովհետև սոցիալիզմի երկրներն այսօր վճռական ավանդ են մուծում պատերազմի կանխման գործում, որովհետև նրանք հանդես են գալիս որպես լարվածության թուլացման և զինաթափման քաղաքականության դրոշակակիրներ:

Մենք Սովետական Միությունում վերջերս, մեր կուսակցության XXVI համագումարում, հանդես եկանք մի շարք միանգամայն կոնկրետ առաջարկություններով, որոնք նպատակամղված են միջազգային առավել սուր և հասունացած պրոբլեմների կարգավորմանը՝ հանուն խաղաղության և բոլոր ժողովուրդների անվտանգության: Դրանք հնչեցին ամբողջ աշխարհում և ջերմ արձագանք գտան բոլոր մայրցամաքներում: Մենք գնահատում ենք այն եռանդուն և ակտիվ պաշտպանությունը, որ այդ առաջարկություններին ցույց տվին մեր բարեկամներն ու դաշնակիցները, այդ թվում, իհարկե, սոցիալիստական Չեխոսլովակիան: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Այստեղ, Եվրոպայի կենտրոնում, ուզում եմ առանձնակի անդրադառնալ սովետական նոր առաջարկություններից միայն մեկին:

Եվրոպայում միջուկային սպառազինությունների անզուսպ մրցավազքը մահացու վտանգ է սպառնում եվրոպական բոլոր ժողովուրդներին: Այդ պրոբլեմի գործնական լուծմանն ինչ-որ ձևով ձեռնամուխ լինելու համար մենք իբրև սկիզբ առաջարկում ենք թեկուզ վերջակետ դնել եղածի տակ, այսինքն՝ դադարեցնել Եվրոպայի գոտում ՍՍՀՄ-ին և ՆԱՏՕ-ի երկրներին պատկանող միջին հեռավորության հրթիռամիջուկային նոր միջոցների հետագա տեղադրումը և եղածների փոխարինումը: Ներառյալ, իհարկե, այդ շրջանում առաջավոր բազավորման ամերիկյան միջուկային միջոցները: Այս մորատորիումը կարող էր գործել այնքան ժամանակ, քանի դեռ չի կնքվի Եվրոպայում երկու կողմերի հիշյալ միջուկային միջոցների սահմանափակման, իսկ ավելի լավ է՝ դրանց կրճատման մշտական պայմանագիր:

Իհարկե, մորատորիումի վերաբերյալ մեր առաջարկը ինքնանպատակ չէ: Այն արվել է բանակցությունների համար առավել բարենպաստ մթնոլորտ ստեղծելու մտադրությամբ: Այս դեպքում նպատակը,— ես այս մասին ասել եմ ավելի վաղ և հիմա էլ կրկնում եմ,— մենք համարում ենք հենց այն, որ կողմերը կրճատեն Եվրոպայում կուտակված միջուկային միջոցների քանակը: Դա միանգամայն հնարավոր է անել, չվտանգելով ո՛չ Արևելքի, ոչ էլ Արևմուտքի անվտանգության պայմանները:

Մեր առաջարկը, ինչպես հայտնի է, խիստ դրական արձագանք գտավ Արևմտյան Եվրոպայի քաղաքական լայն շրջաններում և հասարակայնության ոլորտում: Բայց չհապաղեցին նաև նրանք, ում քիմքին այդ առաջարկը ակընհայտորեն տհաճ էր:

Պնդում են, թե իբր սովետական նոր առաջարկության նպատակն է ամրապնդել ուժերի իբր այժմ գոյություն ունեցող գերակշռությունը Վարշավայի պայմանագրի երկրների կողմում: Դա, անշուշտ, այդպես չէ: Ես արդեն առիթ եմ ունեցել այդ մասին հանգամանորեն խոսելու ՍՄԿԿ XXVI համագումարում: Եթե վերառնենք միջուկային այն ողջ պոտենցիալները, որ այսօր ունեն երկու



կողմերը Եվրոպայի շրջանում, ապա առկա է երկու կողմերի ուժերի մոտավոր հավասարակշռություն. Ի դեպ, դա բազմիցս խոստովանել են նաև Արևմուտքում: ԳՖՀ-ի կանցլեր Շմիդտը, օրինակ, այս տարվա փետրվարին իր հրապարակային հայտարարություններից մեկում ուղղակի ժխտեց, թե Եվրոպայում Արևելքի և Արևմուտքի միջև ուժերի հավասարակշռությունը խախտված է: Կանցլերը, սակայն, երկյուղ հայտնեց, որ «ռուսները ահա ուր որ է կարող են այն խախտել»: «Հարաբերական հավասարակշռության և համարժեքության» առկայության մասին վերջերս ասաց նաև ԱՄՆ-ի պետական քարտուղար Հեյգը: Նա, իհարկե, անհանգստություն հայտնեց, թե այդ հավասարակշռությունն իբր ՍՍՀՄ-ի օգտին կարող է փոխվել մինչև ընթացիկ տասնամյակի կեսերը:

Իրերի տրամաբանությամբ, ներկա իրադրության և դրա զարգացման հեռանկարների նման գնահատության դեպքում արևմտյան երկրների ղեկավարները պետք է երկու ձեռքով կառչեին մեր առաջարկին: Եվ, եթե դրա փոխարեն նրանցից ոմանք ջանում են նսեմացնել դրա նշանակությունը, ապա, իհարկե, ոչ այն պատճառով, որ մի քանի օրում փոխվեց ուժերի հարաբերակցությունը Եվրոպայում: Նրանք այդպես են անում, որովհետև կուզեին փոխել այդ հարաբերակցությունը հօգուտ Արևմուտքի և չեն կամենում իրենց կաշկանդել մորատորիումով:

Բայց այդպիսի փորձերը,— դա հարկավոր է հստակ ըմբռնել,— սոսկ կրտիպեն մյուս կողմին ձեռնարկելու պատասխան միջոցներ: Եվ կրկին անելանելի իրավիճակ, միայն թե Եվրոպայի դրությունը ավելի վտանգավոր կդառնա բոլորի համար: Մի՞թե արևմտյան տերությունների կառավարությունների համար այդքան դժվար է հասկանալ դա:

Ընկերնե՛ր, մեր բոլոր առաջարկները նպատակ ունեն կարգավորելու խաղաղության ամրապնդման համար առավել հրատապ, առավել կարևոր միջազգային պրոբլեմները: Եվ մենք շահագրգռված կողմերին առաջարկում ենք այդ հարցերի շուրջը գործարար, կոնստրուկտիվ բանակցություններ ուզած մակարդակով, առանց որևէ նախապայմանի: Եթե որևէ մեկը ունի այլ խելացի առաջարկ, մենք պատրաստ ենք քննության առնել նաև դրանք:

Սակայն, անկեղծ ասած, մենք արևմտյան տերությունների կառավարությունների կողմից բանակցությունների հատուկ պատրաստակամություն առայժմ չենք նկատում:

Երբեմն մեզ ասում են, թե այդ ամենը շատ հետաքրքրական է, բայց պահանջում է տևական ուսումնասիրություն և, իբր, շտապելու հարկ չկա: Միաժամանակ հասկացնում են, թե դիրքորոշումը կախված է ոչ թե տվյալ կառավարությունից, այլ ուրիշներից: Իսկ մինչ այդ, ուրեմն թող ուժեղանա սպառազինությունների մրցավազքը, և ավելի սրվի միջազգային իրադրությունը:

Այլ դեպքերում մեզ փորձում են պահանջներ ներկայացնել, նախապայմաններ դնել: Իրենք, հավակնելով մոլորակի համարյա բոլոր անկյուններում տնօրինելու ինչ-որ «իրավունքի», պահանջում են, որ մենք բանակցություններին Արևմուտքի համաձայնության փոխարեն որպես «վարձ» հրաժարվենք սեփական անվտանգության շահերի տարրական հաշվառումից և մեր բարեկամներին օգնելուց, երբ նրանք ենթարկվում են ագրեսիայի կամ հարձակման սպառնալիքի:

Տարօրինակ դիրքավորում, եթե չասենք՝ ավելին:

Մի րոպե պատկերացրեք, որ Սովետական Միությունը հայտարարեր՝ նախքան միջազգային որևէ հասունացած պրոբլեմի կարգավորման շուրջը բանակցություններ սկսելը, թող, որ արևմտյան տերությունները փոխեն իրենց քաղաքականությունը այն մասում, որը մեզ, ինչպես նաև շատ ուրիշների, որոշակիորեն դուր չի գալիս: Ասենք, թող ԱՄՆ-ը սկզբից իր զորքերը դուրս բերի այսինչ և այսինչ երկրից, արտասահմանում գտնվող այսինչ ռազմական բազաներից: Եվ թող նա դադարեցնի աջակցել այսինչ դիկտատուրական տեռորիստական վարչակարգերին և զինել նրանց:

Որևէ մեկը լուրջ բանի տեղ կդնե՞ր այդպիսի մոտեցումը բանակցությունների հարցին: Հազիվ թե: Ավելի շուտ մեզ կանվանեին քաղաքականությունից

քիչ բան հասկացող պարզամիտներ, կամ մարդիկ, որոնք արհեստական խոչընդոտներ ու քաշքշուկ են հարուցում, խույս են տալիս բանակցություններից, որովհետև ունեն միանգամայն այլ, բնավ ոչ խաղաղ մտադրություններ:

Պատմության փորձը, ինչպես և վերջին տասնամյակների փորձը, համոզիչ կերպով ասում է՝ պետությունների՝ միմյանց հետ վարած բանակցությունները հաջողվում են միայն այն ժամանակ, երբ հրաժարվում են սեփական պայմանները միմյանց թելադրելու փորձերից, երբ առկա է խաղաղության իսկական կամք և պարտնյորների շահերի փոխհարգանք: Հենց այդ հիման վրա ձեռք բերվեցին միջազգային այն կարևորագույն համաձայնագրերը, որոնք օգնեցին խաղաղության և ժողովուրդների անվտանգության ամրապնդմանը: Կհիշատակեմ, օրինակ, անկախ և դեմոկրատական Ավստրիայի վերականգնման պետական պայմանագիրը, Արևմտյան Բեռլինի վերաբերյալ 1971 թվականի համաձայնագիրը, ԳՖՀ-ի հետ ՍՍՀՄ-ի, Չեխոսլովակիայի, Լեհաստանի, ԳԴՀ-ի պայմանագրերը, ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման սովետաամերիկյան պայմանավորվածությունները և, իհարկե, Եվրոպայի անվտանգության ու համագործակցության խորհրդակցության Հելսինկիում ստորագրված եզրափակիչ ակտը:

ՍՄԿԿ XXVI համագումարում առաջ քաշված և համապատասխան պետությունների կառավարություններին ի գիտություն հայտնված՝ Սովետական Միության կոնստրուկտիվ առաջարկների նկատմամբ նույնպիսի մոտեցում ենք մենք սպասում այդ կառավարությունների կողմից: Քանի որ առաջարկություններն արվել են ոչ թե պրոպագանդայի, այլ նրա համար, որպեսզի օգնեն՝ փոխադարձաբար ընդունելի պայմանավորվածությունների հասնելու հանուն խաղաղության՝ Եվրոպայի, Ասիայի, Ամերիկայի, Մերձավոր, Միջին և Հեռավոր Արևելքի խաղաղության: Հանուն ընդհանուր խաղաղության: (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Թանկագին ընկերնե՛ր:

Թույլ տվեք վերջում վստահություն հայտնել, որ Չեխոսլովակիայի կոմունիստները, բանվոր դասակարգը, գյուղացիությունը և մտավորականությունը կկարողանան հաջողությամբ լուծել հանուն սոցիալիզմի կառուցման ճանապարհին կուսակցության և երկրի առջև ծառացած պատասխանատու խնդիրները: Ղեկավարվելով Չեխոսլովակիայի կոմկուսի ներկա համագումարի ցուցումներով, դուք, անտարակույս, ավելի կհարստացնեք ու կգեղեցկացնեք ձեր հայրենիքը, ավելի կբարելավեք ժողովրդի կյանքը, նոր ավանդ կմուծեք մեր ընդհանուր գործում՝ Եվրոպայի և ամբողջ աշխարհի խաղաղության ու անվտանգության ապահովման գործում: Ձեզ լիակատար հաջողություն ենք մաղթում այդ բոլոր փառավոր գործերում: (ԲՈՒՌՆ, ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Կեցցե՛ Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցությունը: (ԲՈՒՌՆ, ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Կեցցե՛ եղբայրական չեխոսլովակյան ժողովուրդը: (ԲՈՒՌՆ, ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Կեցցե՛ սովետա-չեխոսլովակյան հավերժական բարեկամությունը: (ԲՈՒՌՆ, ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Թո՛ղ ապրի և ամրապնդվի սոցիալիզմի երկրների մեծ համագործակցությունը: (ԲՈՒՌՆ, ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Թո՛ղ հաստատուն լինի աշխարհի խաղաղությունը, հուսալի՝ ժողովուրդների անվտանգությունը: (ԲՈՒՌՆ, ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Անշեղորեն առա՛ջ, բարեկամնե՛ր, դեպի մեր արդար ու ազնիվ նպատակը՝ կոմունիզմի կառուցումը: (ԲՈՒՌՆ, ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ: ԲՈԼՈՐԸ ՈՏՔԻ ԵՆ ԿԱՆԳՆՈՒՄ: ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՄԱՍՆԱԿԻՑՆԵՐԸ ՎԱՆԿԱՐԿՈՒՄ ԵՆ՝ «ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆ: ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆ»: «ԲՐԵԺՆԵՎ: ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆ»):

---

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄՈՒՄ, ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴՈՒՄ, ՀԱՄԿԽ-ՈՒՄ ԵՎ ՀԱՄԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄՈՒՄ

# ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԱՌԱՋԱԴՐԱՆՔՆԵՐԸ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՄԲ ԿԱՏԱՐԵԼՈՒ ԵՎ ԳԵՐԱԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, ՀԱՄԿԽ-ն և ՀամԼԿԵՄ Կենտկոմը նշում են, որ կուսակցության XXVI համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը, համագումարի որոշումները, ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները հսկայական ոգևորությամբ և հայրենասիրական խանդավառությամբ ընդունեցին կոմունիստները, բանվորները, կոլտնտեսականները, մտավորականությունը, ամբողջ սովետական ժողովուրդը:*

*Ի պատասխան կուսակցության կոչի՝ նոր հնգամյակը նշանավորել նախաձեռնողական հարվածային աշխատանքով ի բարօրություն հայրենիքի, աշխատավորական կոլեկտիվներում լայնորեն ծավալվում է սոցիալիստական մրցությունը աշխատանքի արդյունավետությունն ու որակը բարձրացնելու, գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու, տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու և գերակատարելու համար: Ամբողջ երկրում պաշտպանություն են գտնում և տարածվում են հնգամյակի առաջին տարվա անհատական ու բրիգադային առաջադրանքները մինչև նոյեմբերի 7-ը ավարտելու՝ Մոսկվայի ու Լենինգրադի աշխատավորների նախաձեռնությունը, տասնմեկերորդ հնգամյակում առանց աշխատողների թվի ավելացման արդյունաբերական արտադրանքի աճի հասնելու՝ Յարոսլավլի մարզի աշխատավորների նախաձեռնությունը, նախագծային կարողությունները ժամկետից շուտ յուրացնելու՝ Ռոստովի մարզի աշխատավորների նախաձեռնությունը, գյուղատնտեսական արտադրանքի որակը բարելավելու՝ Կրասնոդարի երկրամասի և Դնեպրոպետրովսկի մարզի կոլտնտեսությունների ու սովխոզների նախաձեռնությունը, մետաղը և վառելիքաէներգետիկ ռեսուրսները տնտեսելու՝ Ուրալի և Կուզբասի աշխատավորական կոլեկտիվների աշխատանքի փորձը:*

*Սոցիալիստական մրցությունը մասսաների կենդանի ստեղծագործությունն է, սովետական մարդկանց խոր գիտակցականության ու նախաձեռնության վրա հիմնված հայրենասիրական շարժում, աշխատավորներին կոմունիստական շինարարության պլանների կենսագործմանը մոբիլիզացնող հուժկու միջոց: Սոցիալիստական մրցությունն օգնում է՝ ի հայտ բերելու և գործադրելու արտա-*

դրության ռեզերվները, բարձրացնելու աշխատանքի արդյունավետությունն ու որակը, այն աշխատավորներին արտադրության կառավարման մեջ ներգրավելու, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք դաստիարակելու արդյունավետ միջոց է։ Դրա հետ մեկտեղ մի շարք դեպքերում դեռևս լրիվ չեն օգտագործվում սոցիալիստական մրցության մեծ հնարավորությունները։

Առաջնահերթ նշանակություն տալով սոցիալիստական մրցության հետագա զարգացմանը, երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման խնդիրների լուծման գործում դրա դերի բարձրացմանը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, արհեստակցական միությունների համամիութենական կենտրոնական խորհուրդը և ՀամԼԿԵՄ Կենտրոնական կոմիտեն որոշում են.

1. Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, մինիստրություններին և գերատեսչություններին, միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին, կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական ու տնտեսական մարմիններին՝ օգտագործելով մասսաների աշխատանքային ու քաղաքական բարձր վերելքը, սոցիալիստական մրցությունը նպատակամղել կուսակցության XXVI համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևի առաջադրած խնդիրների, համագումարի որոշումների իրականացմանը, հնգամյակի առաջադրանքների հաջող կատարմանն ու գերակատարմանը, սովետական մարդկանց բարեկեցության հետագա աճի ապահովմանը։

Բարձրացնել սոցիալիստական մրցության ողջ կազմակերպման մակարդակը, զարգացնել այն տնտեսական մեխանիզմի կատարելագործման միջոցառումների հետ սերտորեն կապված։ Բազմապատկել մրցության փառապանծ ավանդույթները, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում ստեղծել խիկական ստեղծագործական որոնման, աշխատանքային գիտակցականության ու ընկերական փոխօգնության մթնոլորտ, հանձնարարված գործի համար բարձր պատասխանատվության, թերությունների, աշխատանքային կարգապահության խախտումների նկատմամբ անհաշտվողականության մթնոլորտ։

Ապահովել բոլոր բանվորների, կոլտնտեսականների, ինժեներատեխնիկական աշխատողների, մասնագետների ու ծառայողների, բրիգադների, տեղամասերի, օղակների, բաժանմունքների ու ֆերմաների, ձեռնարկությունների, միավորումների, սովխոզների, կոլտնտեսությունների, կազմակերպություններն ու հիմնարկությունների կոլեկտիվների, քաղաքների, շրջանների, մարզերի, երկրամասերի ու հանրապետությունների աշխատավորների ակտիվ մասնակցությունը համամիութենական սոցիալիստական մրցությանը։

2. ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, ՀԱՄԿԽ-ն և ՀամԼԿԵՄ Կենտկոմը ընդգծում են, որ մրցության նշանաբան պետք է դառնա «Աշխատել արդյունավետ ու որակով»։ Սա նշանակում է տիրոջ պես վերաբերմունք ցուցաբերել հանրային բարիքի նկատմամբ, հմտորեն և արդյունավետ օգտագործել բոլոր առկա ռեսուրսները, արտադրական ողջ պոտենցիալը, նվազագույն ծախսումներով հասնել առավելագույն արդյունքների։ Մրցողների ջանքերը կենտրոնացնել աշխատանքի արտադրողականության աճն արագացնելու, արտադրանքի որակը բարձրացնելու, հումքը, նյութերը, վառելիքն ու էլեկտրաէներգիան տնտեսելու, հիմնական ֆոնդերը լավագույն ձևով օգտագործելու, արտադրանքի մատակարարումների պլանները սահմանված ժամկետներում և սահմանված տեսականիով անպայման կատարելու վրա։

Այդ հիման վրա ապահովել.

արտադրության միջոցների նկատմամբ ժողովրդական տնտեսության պահանջմունքների և ժողովրդական սպառման ապրանքների նկատմամբ բնակչության պահանջմունքների առավել լրիվ բավարարումը, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ստեղծման ու արմատավորման ժամկետների կրճատումը, ֆոնդահատույցի բարձրացումը, նյութատարության պակասեցումը.



երկրագործության և անասնապահության արտադրության հետագա աճը և արտադրանքի որակի բարելավումը, պարենային ծրագրի հաջող իրականացումը, վարելահողի մեկ հեկտարից վերջնական արտադրանքի քանակի ավելացման համար գյուղատնտեսական, տրանսպորտային ու արդյունաբերական ձեռնարկությունների համաձայնեցված աշխատանքը.

փոխադրումների նկատմամբ ժողովրդական տնտեսության և բնակչության պահանջմունքների լրիվ և ժամանակին բավարարումը, տրանսպորտի բոլոր տեսակների հստակ փոխգործողությունն ու դրանց գործունեության կոորդինացումը, բեռները տեղ հասցնելու ժամկետների կրճատումը և դրանց պահպանումը, ուղևորների սպասարկման կուլտուրայի բարձրացումը.

Արտադրական կարողությունների, կուլտուր-կենցաղային օբյեկտների ու բնակելի տների շինարարության ժամկետների կրճատումը, դրանք ժամանակին և ժամկետից շուտ շահագործման հանձնելը, անավարտ շինարարության ծավալների կրճատումը, գործող ձեռնարկությունների վերակառուցման ու տեխնիկական վերազինման արագացումը.

սպասարկումների ծավալների ու տեսակների ընդլայնումը, բնակչության սպասարկման առաջավոր ձևերի արմատավորումը, որակի ու կուլտուրայի բարձրացումը։

3. Կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպություններին, տնտեսական ղեկավարներին՝ հատուկ ուշադրություն նվիրել մրցության ծավալմանը բրիգադներում, տեղամասերում, բաժանմունքներում, ֆերմաներում։ Բարձրացնել այդ կոլեկտիվների դերը արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման համար, աշխատանքային կարգապահության ամրապնդման, կադրերի հոսունության կրճատման համար, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակման համար մղվող պայքարում։ Պաշտպանել ու տարածել հանդիպական պլանների մշակման, աշխատանքի տեխնիկապես հիմնավորված նորմաների, բրիգադային տնտհաշվարկի, խնայողության ու որակի անհատական հաշիվների արմատավորման, աշխատանքի սահմանված ծավալը անձնակազմի նվազագույն թվով կատարելու՝ բանվորների ու կոլտնտեսականների նախաձեռնությունները։

Մրցության առաջավորները, կոմունիստական աշխատանքի հարվածայիններն ու կոլեկտիվները պետք է օրինակ ծառայեն արտադրության մեջ, հասարակական կյանքում և կենցաղում։

4. Մինիստրություններին, գերատեսչություններին, կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական մարմիններին, տնտեսական ղեկավարներին՝ համակողմանիորեն պաշտպանել այնպիսի հանդիպական պլաններ մշակելու աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնությունը, որպիսիք նպատակամղված լինեն որակական ցուցանիշների բարելավմանը, ամենից առաջ՝ աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, ինքնարժեքի իջեցմանը, շահույթի, որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի ավելացմանը, արտադրական կարողությունների առավել արդյունավետ օգտագործմանը, ռեսուրսների տնտեսման հաշվին արտադրության ծավալների մեծացմանը։ Նյութական, կազմակերպական-տեխնիկական ու տնտեսական անհրաժեշտ պայմաններ ստեղծել հանդիպական պլանների հաջող իրականացման համար։

5. Ամեն կերպ զարգացնել հարակից ձեռնարկությունների ու կազմակերպությունների կոլեկտիվների մրցությունը, նպատակ ունենալով բարենպաստ պայմաններ ստեղծել համաչափ աշխատանքի համար, վերջնական լավագույն արդյունքների հասնելու, գիտատեխնիկական և սոցիալ-տնտեսական կարևորագույն պրոբլեմների լուծման նպատակային կոմպլեքսային ծրագրերի հաջող իրականացման համար։ Այդ նպատակով լայնորեն օգտագործել արդյունաբերության արդյունահանող և վերամշակող ճյուղերի ձեռնարկությունների, Սայանո-Շուշենսկոյեի ու Նուրեկի հիդրոէլեկտրակայանների, ԿԱՄԱԶ-ի ու «Ատոմմաշ» գործարանի կառուցմանը մասնակցող աշխատավորական կոլեկտիվների համագործակցության փորձը՝ «բանվորական էստաֆետի» սկզբուն-

քով, Լենինգրադի տրանսպորտային հանգույցի աշխատողների՝ տրանսպորտի բոլոր տեսակների հստակ փոխգործողության և գործունեության կոորդինացման փորձը, գյուղատնտեսության, թեթև, տեքստիլ և արդյունաբերության այլ ճյուղերի աշխատավորների համագործակցության փորձը՝ «հազարների պայմանագրի» սկզբունքով։

Մինիստրություններին, գերատեսչություններին, միութենական ու ինքնավար հանրապետությունների մինիստրների խորհուրդներին, երկրգործկոմներին ու մարզգործկոմներին՝ ապահովել մրցության պայմանագրեր կնքած հարակից ձեռնարկությունների, միավորումների, գիտահետազոտական, նախագծակոնստրուկտորական և մյուս կազմակերպությունների գործունեության կոորդինացումը, միջճյուղային կոորդինացիոն խորհուրդներին ու հասարակական շտաբներին անհրաժեշտ օգնություն ցույց տալ հարակիցների մրցության զարգացման գործում։

6. Մինիստրություններին, գերատեսչություններին, արհմիությունների կենտկոմներին՝ միավորումների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների կոլեկտիվների աշխատանքը գնահատելիս հաշվի առնել պետական պլանների լարվածությունը, աճի տեմպերը, արտադրական գործունեության վերջնական արդյունքները, կարողությունների և բնակարանային ու կուլտուր-կենցաղային նշանակություն ունեցող օբյեկտների կոմպլեքսային գործարկումը, դաստիարակչական աշխատանքի վիճակը, հարաճուն արդյունքով սոցիալիստական պարտավորությունների կատարումը տարվա և հնգամյակի սկզբից։

Կատարելագործել մրցության մասնակիցների նյութական ու բարոյական խթանման սիստեմը։ Նյութական խրախուսման ֆոնդի և աշխատավարձի ֆոնդի միջոցներն առավել լրիվ օգտագործել աշխատողներին պարգևատրելու համար՝ հաշվի առնելով սոցիալիստական մրցության արդյունքները։

Օպերատիվություն ապահովել մրցության արդյունքներն ամփոփելիս։

7. Սահմանել, որ սոցիալիստական մրցության հաղթողները պարգևատրվում են.

բանվորները, կոլտնտեսականները, ինժեներատեխնիկական աշխատողները, մասնագետները և ծառայողները՝ մինիստրությունների (գերատեսչությունների) ու արհմիությունների կենտկոմների պատվո դիպլոմներով և հուշանվերներով կամ դրամական մրցանակներով.

բրիգադների, տեղամասերի, օղակների, ֆերմաների, բաժանմունքների կոլեկտիվները՝ մինիստրությունների (գերատեսչությունների) ու արհմիությունների կենտկոմների հուշադրոշներով և հուշանվերներով կամ դրամական մրցանակներով.

կոմերիտական-երիտասարդական բրիգադները՝ «Հնգամյակի հերոսներ— լավագույն կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվին» փոխանցիկ կարմիր դրոշներով, դիպլոմներով և դրամական մրցանակներով.

արդյունաբերական, արտադրական, գիտաարտադրական, միջտնտեսային, ագրոարդյունաբերական և այլ միավորումների, դրանց արտադրական միավորումների, ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների, սովխոզների, գիտահետազոտական, նախագծային, կոնստրուկտորական և այլ կազմակերպությունների ու հիմնարկությունների, բարձրագույն ուսումնական հաստատությունների կոլեկտիվները՝ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի ու ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշներով, դիպլոմներով և դրամական մրցանակներով։ Տարվա արդյունքներին համաձայն, ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի, ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշներով պարգևատրված և հնդիպական պլանների ու սոցիալիստական բարձր պարտավորությունների կատարման ընթացքում առավել բարձր ու կայուն արդյունքների հասած կոլեկտիվները գրանցվում են ՍՍՀՄ ժողտնտնվաճումների ցուցահանդեսի համամիութենական պատվո տախտակին.

քաղաքները, ազգային օկրուգները, քաղաքային ու գյուղական շրջանները՝ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշներով, դիպլոմներով և դրամական մրցանակներով.

միութենական և ինքնավար հանրապետությունները, երկրամասերն ու մարզերը՝ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի ու ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշներով և դիպլոմներով։

Համամիութենական սոցիալիստական մրցության արդյունքներն ամփոփել ըստ հնգամյակի յուրաքանչյուր տարվա և ըստ ամբողջ հնգամյակի։ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի ու ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշները առհավետ պահպանության են հանձնվում այն ձեռնարկություններին, շրջաններին, քաղաքներին, ինքնավար օկրուգներին, մարզերին, երկրամասերին ու հանրապետություններին, որոնք հնգամյակի ընթացքում ամեն տարի արժանացել են այդ պարգևներին։

8. ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի ու ՀամԼԿԵՄ Կենտկոմի «Տասնմեկերորդ հնգամյակում աշխատանքի բարձր արդյունավետության ու որակի համար» հուշանշան հիմնել ձեռնարկությունների, միավորումների, կառույցների, կոլտնտեսությունների, սովխոզների, գիտահետազոտական և այլ կազմակերպությունների ու հիմնարկությունների, բարձրագույն ուսումնական հաստատությունների կոլեկտիվներին պարգևատրելու համար։ Հուշանշանով պարգևատրել այն կոլեկտիվներին, որոնք աշխատանքի բարձր որակի և լավագույն ցուցանիշների են հասել տասնմեկերորդ հնգամյա պլանի առաջադրանքների կատարման գործում, բազմիցս արժանացել են ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշների՝ համամիութենական սոցիալիստական մրցության տարեկան արդյունքների համաձայն։

Բանվորներին, կոլտնտեսականներին, ինժեներատեխնիկական աշխատողներին, մասնագետներին ու ծառայողներին պարգևատրելու համար հիմնել «Տասնմեկերորդ հնգամյակի հարվածային» միասնական ընդհանուր միութենական կրծքանշան, հուշանվերի հետ միասին այն հանձնելով աշխատանքի արդյունավետության ու որակի բարձրացման ասպարեզում բարձր արդյունքների հասնելու, առաջադրանքներն ու սոցիալիստական պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու համար։

9. 25-ի հասցնել ՍՍՀՄ այն պետական մրցանակների քանակը, որպիսիք աշխատանքում և գիտատեխնիկական ստեղծագործության մեջ ակնառու նվաճումների համար շնորհվում են սոցիալիստական մրցության առաջավորներին՝ բանվորներին, կոլտնտեսականներին, ինժեներատեխնիկական աշխատողներին ու մասնագետներին։

Համաձայնել՝

ՀԱՄԿԽ-ի առաջարկությանը՝ աշխատանքի ականավոր վետերանների անվան սովետական արհմիությունների մրցանակներ հիմնելու մասին՝ ըստ ժողովրդական տնտեսության ճյուղերի, արտադրության այն առաջավորներին շնորհելու համար, որոնք սոցիալիստական մրցության մեջ հասել են բարձր արդյունքների. համամիութենական սոցիալիստական մրցության հաղթողներին խրախուսելու համար Սովետական Միության և արտասահմանյան երկրների տարեկան 120 հազար արտոնյալ տուրիստական ուղեգրեր հատկացնելու մասին.

ՀամԼԿԵՄ Կենտկոմի առաջարկությանը՝ սոցիալիստական մրցության մեջ բարձր արդյունքների հասած կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվներին և արտադրության երիտասարդ աշխատողներին լենինյան կոմերիտմիության մրցանակներ շնորհելու մասին. արտադրության առաջավորներին «Տասնմեկերորդ հնգամյակի երիտասարդ գվարդիական» կրծքանշանով պարգևատրելու մասին և սոցիալիստական մրցության հաղթողների համար սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական ու աշխատանքային փառքի վայրերով և եղբայրական սոցիալիստական երկրներում ուղևորություն կատարելու համար տարեկան 30 հազար արտոնյալ տուրիստական ուղեգրեր հատկացնելու մասին։

10. Կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական և տնտեսական մարմիններին՝ անշեղորեն կենսագործել սոցիալիստական մրցության կազմակերպման լենինյան սկզբունքները՝ հրապարակայնությունը, արդյունքների համեմատումը և առաջավոր փորձի գործնական կրկնության հնարավորությունը։

Հասնել մրցության հաղթողների փորձի լայն տարածման, բարելավել այդ փորձի ցուցադրումը ՍՍՀՄ ժողտնտնվաճումների ցուցահանդեսի ճյուղային տաղավարներում, դրա ուսումնասիրումը առաջավոր փորձի դպրոցներում, տնտեսագիտական ուսուցման սիստեմում, կոմունիստական աշխատանքի դըպրոցներում, ժողովրդական համալսարաններում։

Պրակտիկա դարձնել ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարների, կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական աշխատողների սեմինարների անցկացումը՝ փոխանցիկ կարմիր դրոշներով պարգևատրված կոլեկտիվների բազայի վրա։

Մեծացնել գաղափարադաստիարակչական աշխատանքի, պրոպագանդայի ու ագիտացիայի դերը սոցիալիստական մրցության արդյունավետության ապահովման, այդ մրցության մասնակիցների արտադրական ու հասարակական ակտիվության բարձրացման գործում։ Մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի միջոցների հնարավորությունները առավել լրիվ օգտագործել արժեքավոր նախաձեռնությունները լայնորեն տարածելու և արմատավորելու համար, մրցության հաղթողների կողմից բարձր արդյունքների հասնելու ուղիները, մեթոդները համակողմանիորեն ցույց տալու համար։

ՍՍՀՄ հրատպետկոմին, քաղհրատին, արհհրատին, «Պլակատ» և «Երիտասարդ գվարդիա» հրատարակչություններին, ՍՍՀՄ պետկինոյին՝ պլաններում նախատեսել այնպիսի գրքերի, պլակատների լույսընծայում, այնպիսի վավերագրական ու գեղարվեստական ֆիլմերի նկարահանում, որոնք խորապես բացահայտեն առաջավորների փորձը, մրցությունը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը զարգացնելու հրատապ պրոբլեմները։ Պրակտիկա դարձնել կենտրոնական ու տեղական թերթերում սոցիալիստական մրցությանը նվիրված հատուկ էջերի հրապարակումը, ինչպես նաև «Սոցիալիստական մրցության օրագիր» հեռուստառադիոհաղորդումները։

11. Մինիստրություններին, գերատեսչություններին՝ արհմիությունների կենտկոմների հետ համատեղ մշակել և ՍՍՀՄ աշխպետկոմի ու ՀԱՄԿԽ-ի հետ համաձայնեցնելով հաստատել տասնմեկերորդ հնգամյակի համամիութենական սոցիալիստական մրցության պայմանները ճյուղերում։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, ՀԱՄԿԽ-ն և ՀամԼԿԵՄ Կենտկոմը հաստատ վստահություն են հայտնում, որ բանվորներն ու կոլտնտեսականները, ինժեներատեխնիկական ու գիտական աշխատողները, արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի բոլոր աշխատավորները է՛լ ավելի լայնորեն կծավալեն համամիութենական սոցիալիստական մրցությունը տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու և գերակատարելու համար, կապահովեն ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումների կենսագործումը։

---

# ԵՐԵՎԱՆԻ ՄԵՏՐՈՊՈԼԻՏԵՆԻ ԱՌԱՋԻՆ ԳԾԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՄԱՍՆԱԿԻՑՆԵՐԻՆ

Թանկագին ընկերնե՛ր։

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն շնորհավորում է ձեզ Երևանի մետրոպոլիտենի առաջին գծի կառուցումն ավարտելու առթիվ։

Երևան քաղաքում՝ Անդրկովկասի արդյունաբերական և կուլտուրական խոշոր կենտրոններից մեկում մետրոպոլիտենի կառուցումը մեծ ավանդ է Հայկական ՍՍՀ-ի մայրաքաղաքի տրանսպորտային ցանցի զարգացման գործում։ Ինժեներաերկրաբանական բարդ պայմաններում դուք կատարել եք մեծ ծավալի աշխատանքներ, ճարտարապետագեղարվեստական բարձր մակարդակով՝ ազգային ճարտարապետության լավագույն նվաճումների օգտագործմամբ ստեղծել եք մետրոպոլիտենի կայարանները և մյուս ինժեներային կառուցվածքները։ Մետրոյի առաջին գծի գործարկման շնորհիվ բարենպաստ պայմաններ են ստեղծվում բնակչությանը հասարակական տրանսպորտի արագընթաց և հարմարավետ տեսակով սպասարկելու համար։ Դա սովետական մարդկանց բարեկեցության բարձրացման նկատմամբ կոմունիստական կուսակցության և կառավարության մշտական հոգատարության վառ վկայությունն է։

Ձեր բերված հաջողությունները ձեր անձնվեր աշխատանքի, հանրապետության շատ կոլեկտիվների և մեր երկրի այլ քաղաքների մետրոշինարարների մեծ օգնության, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների կազմակերպչական ու քաղաքական նպատակասլաց աշխատանքի արգասիքն են։

Հաստատ վստահություն եմ հայտնում, որ դուք ոգեշնչված կաշխատեք ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումների կենսագործման համար, հաջողությամբ կկատարեք 1981 թվականի և ամբողջությամբ վերցրած տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները։

Ձե՛զ, թանկագին ընկերնե՛ր, մաղթում եմ քաջառողջություն և երջանկություն։

**Լ. ԲՐԵԺՆԵՎ**

# ԱՐՓԱ-ՍԵՎԱՆ ԹՈՒՆԵԼԻ ՀՈՐԱՏԱՆՑՈՂՆԵՐԻՆ, ՇԻՆԱՐԱՐՆԵՐԻՆ, ՄՈՆՏԱԺՈՂՆԵՐԻՆ, ՆԱԽԱԳԾՈՂՆԵՐԻՆ, ԿԱՌՈՒՅՑԻ ԲՈԼՈՐ ՄԱՍՆԱԿԻՑՆԵՐԻՆ

Թանկագի՛ն ընկերներ:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեում խորին գոհունակության զգացումով ընդունվեց Արփա գետի ջրերը դեպի Սևանա լիճ շուռ տալու համար 48 կիլոմետրանոց եզակի թունելի կառուցումն ավարտելու մասին հաղորդումը: Ընդունեցեք սրտագին շնորհավորանքներ աշխատանքային այդ ակնառու հաղթանակի առթիվ:

Դեպի Սևան ջրի հոսքափոխման իրականացումը ժողովրդատնտեսական և էկոլոգիական պրոբլեմների կոմպլեքսային լուծման լավ օրինակ է: Դա հնարավորություն կընձեռի ո՛չ միայն պահպանել հրաշալի լիճը, այլև ապահովել էլեկտրաէներգիայի կայուն արտադրությունը հիդրոէլեկտրակայանների Սևան—Հրազդան կասկադում, բարձրացնել մերձակա ոռոգիչ սիստեմների ջրապահովվածությունը, բարելավել հանրապետության աշխատավորների կենսապայմանները:

Բարձրաբերձ լեռների ընդերքով ջրի ճանապարհը բացած ձեր հերոսական աշխատանքը առհավետ կմնա մարդկանց երախտապարտ հիշողության մեջ, որպես մեր ժամանակի հիասքանչ մեծագործություն:

Ձեռք բերված հաջողությունը հնարավոր դարձավ կառույցի հիրավի ժողովրդական բնույթի, բոլոր միութենական հանրապետությունների բանվորների ու մասնագետների անխախտ բարեկամության և եղբայրական փոխօգնության, Հայաստանի կուսակցական կազմակերպության նպատակասլաց գործունեության շնորհիվ:

Վստահ եմ, որ թունելի շինարարների համախմբված բազմազգ կոլեկտիվը կբազմապատկի իր փառավոր ավանդույթները տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները կատարելիս, արժանի ավանդ կներդնի ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների իրականացման գործում:

Ձեզ, թանկագին ընկերներ, մաղթում եմ քաջառողջություն և երջանկություն:

**Լ. ԲՐԵԺՆԵՎ**



# ՍՏԵՂԾԱՐԱՐ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ԾՐԱԳԻՐ

*ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ պատմական նոր փուլ հանդիսացավ կոմունիզմի կառուցման ճանապարհին և այն սովետական մարդկանց մտքերի վրա ներգործեց որպես ստեղծագործության և խաղաղության ոգևորիչ ծրագիր: Այն մեր կուսակցության և ժողովրդի կյանքում դարձավ նոր հորիզոններ նվաճելու ուղենիշ, միջազգային նշանակություն ունեցող իրադարձություն:*

*Համագումարը, որի աշխատանքում նոր ուժով դրսևորվեց կոմունիստական շինարարության մեջ սովետական ժողովրդի կատարած սխրանքների վեհությունը, վերստին հավաստեց, թե ինչպիսի հետևողականությամբ է ՍՄԿԿ-ն կենսագործում լենինյան գաղափարները, շարունակում Հոկտեմբերի վեհ գործը:*

*Ողջ սովետական ժողովրդի ավանդարդի՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության՝ ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած Կենտրոնական կոմիտեի անդուլ գործունեությունը տոգորված է ժողովրդի բարեկեցության բարձրացման, աշխարհում կայուն խաղաղության պահպանման հոգսով:*

*Ամեն ինչ հանուն մարդու, ամեն ինչ մարդու բարօրության համար՝ ծրագրային այս անփոփոխ նպատակակետը եղել և մնում է մեր կուսակցության քաղաքականության խարիսխը: Սկզբունք, որի նկրտումը XXVI համագումարի ընդունած «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների» անշեղ իրագործումն է:*

*ՍՄԿԿ XXIV համագումարի հաստատած խաղաղության լենինյան ծրագիրը, որը հետագա զարգացում ստացավ կուսակցության XXV և XXVI համագումարների փաստաթղթերում, հնարավորություն ընձեռեց սովետական մարդկանց հայրենանվեր աշխատանքով բազմապատկելու երկրի հզորությունը, նոր հասումներ ձեռք բերելու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման բոլոր ասպարեզներում:*

*Այդ համագումարներում սահմանվեց նաև կուսակցության մյուս հետևողական կուրսը— ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացումը՝ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման, ազգային հարստության նշանակալի մեծացման, երկրի արտադրական և գիտատեխնիկական պոտենցիալի հետագա ամրապնդման ուղիով:*

*Կուսակցության տնտեսական ստրատեգիան արդի փուլում սահմանում է տնտեսության ինտենսիվ զարգացում, երկրի արտադրական պոտենցիալի առավել ռացիոնալ օգտագործում, ռեսուրսների խնայողության խստագույն ռեժիմի կիրառում, աշխատանքի արդյունավետության բարձրացում և արտադրանքի որակի բարելավում:*

*Կուսակցության համագումարի այս դրույթը լիովին վերաբերում է նաև մեր հանրապետությանը, որն ունի արտադրական, գիտատեխնիկական ծանրակշիռ*

*պոտենցիալ և այդ հիման վրա պետք է ապահովվի աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը, ծավալների աճը, իրականացվի մետաղի, էլեկտրաէներգիայի, վառելիքի խնայողության նպատակասլաց ծրագիր։*

*Ութսունական թվականներին մեր տնտեսության զարգացման հիմնական նկրտումը էկոնոմիկայի վարումն է ինտենսիվ զարգացման հունով։ Այդ նշանակում է աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացման ապահովում, որի առաջին նախապայմանը գիտատեխնիկական առաջընթացի առավել արագացումն է՝ նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրումը, ամեն նորի աջակցությունը, ձեռքի աշխատանքի հնարավորին չափ կրճատումը, աշխատատար պրոցեսների մեքենայացումը։*

*Մյուս նախապայմանը պլանավորման, տնտեսական մեխանիզմի կատարելագործումն է, սոցիալիստական մրցության գործարար ծավալումը, աշխատավորների աշխատանքային և քաղաքական ակտիվության հար բարձրացումը։ Շատ էական է նաև արտադրանքի որակի հարատև բարելավումը։*

*Կուսակցության XXVI համագումարը խնդիր դրեց աշխատավորական կոլեկտիվների, կուսակցական կազմակերպությունների, կառավարման, պլանավորման բոլոր օղակների ջանքերը նպատակամղել արտադրանքի որակի բարձրացմանը։ Երբեք, ոչ մի դեպքում պլանների քանակական կատարումը չպետք է վնասի որակին։ ՍՄԿԿ XXVI համագումարն առաջադրեց տրանսպորտի արմատական բարելավման խնդիրը, որը պետք է բավարարի ժողովրդական տնտեսության և բնակչության պահանջմունքները։ Տրանսպորտային պրոբլեմների լուծումը հանրապետությունում պայմանավորված է երկարաժամկետ կոմպլեքսային ծրագրի հստակ իրականացմամբ։ Այս հնգամյակում հարկավոր է հուժկու թափով առաջ մղել հանրապետության ժողտնտեսության արմատական խնդիրներից մեկի՝ Իջևան—Հրազդան երկաթուղու կառույցի ավարտի, հարցը, որը խոշոր նշանակություն ունի Հայաստանի առաջընթացի համար։ Դա պետք է լինի հարվածային շինարարություն։*

*Ուրախալի է, որ քաղաքային տրանսպորտի հոգսերն զգալիորեն թեթևացան Երևանի մետրոպոլիտենի առաջին հերթի շահագործման սկզբնավորմամբ։ Բայց երևանյան մետրոպոլիտենը հանրապետության համար շատ ավելի էական նշանակություն ունի, քան որպես սոսկ փոխադրամիջոց։ Դա առաջին հերթին նշանակում էր ստեղծագործ աշխատանքի հաղթահանդես, մեր կուսակցության՝ ժողովրդի նկատմամբ ունեցած հոգատարության նոր արտահայտություն։*

*Միաժամանակ դա ժողովուրդների եղբայրական բարեկամության և փոխօգնության վառ առհավատչյան է։ Մետրոպոլիտենի կառուցումն ասես դրդեց մարդկանց արժույթների վերագնահատում կատարել։ Հիրավի, դա երբեմնի կավաշեն Երևանից մինչև միլիոնանոց մայրաքաղաքի ստորգետնյա կապույտ գնացքների սրընթաց երթն է, որը կուսակցության լենինյան ազգային քաղաքականության, ժողովուրդների բարեկամության արգասավետության փայլուն ապացույցներից մեկն է։ Ակներև է, որ մեր մետրոպոլիտենը դարձավ նաև բանվորական կամքի և արիության թրծման դպրոց այն հազարավոր երիտասարդների համար, ովքեր անդամագրվեցին նրա ինտերնացիոնալ կոլեկտիվին։ Այստեղ, երևանյան մետրոյում առաջին անգամ գերազանցվեցին ռեկորդները, գրվեցին աշխատանքային փառքի ու խիզախման հիանալի էջեր, եղբայրական բարեկամությունը նոր իմաստ ու բովանդակություն ստացավ հաղթահարված յուրաքանչյուր մետրի, նվաճված յուրաքանչյուր բարձունքի համար։*

*Տասնմեկերորդ հնգամյակի սկիզբը հանրապետության աշխատավորության կյանքում նշանավորվեց մի այլ բերկրալի իրադարձությամբ։ Ավարտվեց աշխարհում եզակի կառույց՝ Արփա—Սևան թունելը։ Այսուհետ և ընդմիշտ լեռնային գետի մաքուր կոհակներն ավելի հուժկու են դարձնելու Սևան թագուհու զարկերակի տրոփը, նրա կենսատու ծփանքը։ Այդ հիասքանչ կառույցը վերստին բացահայտում է, թե որքա՜ն անսպառ է սովետական հասարակարգի արարչագործ ուժը, նրա լենինյան դաշնադրության իմաստալի կորովը։ Համաժողովրդական Արփա—Սևանը արդեն երգ է ու կինոնկար, ժողովրդի կենսախնդության աղբյուր։ Այն մարդկանց մղում է անձնվիրության ու զոհողության, նրանց*



*դաստիարակում է հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի, պատվի ու պարտքի բարձր զգացմամբ։ Այդ իրադարձությունների առթիվ հանրապետության աշխատավորությանը, բոլոր կոմունիստներին ջերմորեն շնորհավորեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևը։*

*Այս իրադարձությունները հաջորդեցին կուսակցության XXVI համագումարին։ Նույն օրերին Հայաստանին հանձնվեց հինգերորդ փոխանցիկ կարմիր դրոշը տասներորդ հնգամյակի վերջին տարում և ողջ հնգամյակում ձեռք բերված մեծ հաջողությունների համար։ Այս ամենն աշխատանքային և քաղաքական հզոր վերելք առաջացրին հանրապետությունում՝ նոր, տասնմեկերորդ հնգամյակը ևս կարմրադրոշ դարձնելու հիմքերը դնելու համար։*

*Ժողովրդի բարեկեցության բարձրացման նոր ծրագիրը, որն առաջադրեց կուսակցության համագումարն առաջիկա տասնամյակի համար, հսկայական է իր մասշտաբով ու նշանակությամբ։*

*Տասնմեկերորդ հնգամյակի համար մշակվում է պարենային ծրագիր, որը նախատեսում է բնակչությանը առաջին հերթին ապահովել գյուղատնտեսական մթերքներով։ Գյուղատնտեսության հետագա վերելքի համար վիթխարի ջանքեր են գործադրվել վերջին տարիներին։ Հաջողությամբ իրականացվում է գյուղատնտեսության ինտենսիվ վարման, մթերքների ավելացման կուսակցության կուրսը։ ՍՄԿԿ XXVI համագումարը նոր խնդիրներ առաջադրեց՝ հսկայական կապիտալ ներդրումները, որոնք կատարվել են գյուղատնտեսության զարգացման համար, պետք է փոխհատուցվեն առաջիկա տարիներին։*

*Հանրապետությունում, չնայած ձեռք բերված հաջողություններին, այդ իմաստով դեռևս լիարժեք չեն օգտագործվում գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման ռեզերվները, մի շարք տնտեսություններում դեռևս ցածր է անասնապահության մթերատվությունը և գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, վատ են օգտագործվում տեխնիկան, հողը, ջուրը և այլն։*

*Այս հնգամյակում հանրապետության գյուղի աշխատավորների առջև ծառանում են առաջին հերթին անասնապահական մթերքների արտադրության արագ վերելքի ապահովման խնդիրները։ Բնականաբար, համասարաչափ պետք է զարգանան նաև մյուս ճյուղերը, մասնավորապես պետք է ավելացնել հացահատիկի, կարտոֆիլի, բանջարեղենի, շաքարի ճակնդեղի, խաղողի և այլ մթերքների արտադրությունը։*

*Եվ այդ ամենին ձեռնամուխ պետք է լինել այժմվանից։ Տասնմեկերորդ հնգամյակի առաջին գարնան քննաշրջանը գյուղատնտեսության աշխատողների գալիք հաջողությունների հիմնական գրավականն է։ Կուսակցական կազմակերպությունները պարտավոր են գյուղատնտեսության մթերքների արտադրության ավելացման հարցերը համարել իրենց առաջնահերթ գործը։*

*ՍՄԿԿ XXVI համագումարը լուրջ խնդիրներ դրեց ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աշխատողների առջև՝ հենվելով աշխատավորների բարձր գիտակցականության ու նախաձեռնության վրա։ Հանրապետության կուսակցական կազմակերպությունները պետք է օգտագործեն մասսաների աշխատանքային ու քաղաքական խանդավառությունը, նրանց ջանքերը նպատակամղեն կուսակցության XXVI համագումարի որոշումների հաջող կենսագործմանը։*

*Սերտ է սովետական ժողովրդի և լենինյան կուսակցության միասնությունը։ Կուսակցության ղեկավարությամբ մեր բազմազգ ժողովուրդը օրավուր բազմապատկում է հայրենիքի փառքը, աշխատում նրա առավել հզորության, տնտեսական և հանրային կյանքի, հոգևոր կուլտուրայի բարգավաճման համար։*

*Մեր երկրում ամուր են բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության դաշինքը, սովետական ժողովուրդների եղբայրական բարեկամությունը։ Այդ ամենն իր վառ արտահայտությունը գտավ համագումարում, որը մի անգամ ևս ցուցադրեց մեր հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական կուռ միասնությունը։ Եվ օրինաչափ է, որ սովետական ժողովուրդը, լիովին հավանություն տալով ՍՄԿԿ վարած ներ-*

հնգամյակի ծրագրերի անթերի կատարմանը, սովետական մարդկանց բարեկեցության հետագա աճի ապահովմանը։

ՍՄԿԿ XXVI համագումարը սահմանել է այն կոնկրետ խնդիրները, որոնց կենսագործմանը միահամուռ ձեռնամուխ են եղել հանրապետության աշխատավորները։ Այդ խնդիրները բարդ են ու բազմազան, բայց միանգամայն ռեալ։ Ահա թե ինչու սոցիալիստական մրցության ընթացքում, ժողովրդատնտեսական զարգացման լայն ծրագրի իրականացման համար հարկ է լարել բոլոր ուժերը՝ արտադրության հետագա զարգացման, արդյունավետության բարձրացման, որակի բարելավման խնդիրները մինչև վերջ լուծելու համար։

Կուսակցության կոչը՝ աշխատել կոմունիստաբար, նշանակում է ողջ եռանդը, գիտելիքները, ստեղծագործ միտքը նվիրել աշխատանքին, յուրաքանչյուրն իր տեղամասում անթերի կատարի հնգամյակային իր առաջադրանքները։ Սոցիալիստական մրցությունում հաղթում է նա, ով աշխատում է պարտքի ու պատասխանատվության բարձր զգացումով, լիովին կատարում պետական պլանը։

Այս հնգամյակում սոցիալիստական մրցության նշանաբանն է՝ «Աշխատել արդյունավետ ու որակով»։ Իսկ դա նշանակում է՝ մրցության ընթացքում հոգատար լինել հանրային բարիքի նկատմամբ, աշխատել խնայողաբար և նվազագույն ծախսումներով հասնել շատ արդյունքների, ապահովել աշխատանքի արտադրողականության աճն ու բարելավել արտադրանքի որակը և անպայման կատարել պետական պլանը։ Սոցիալիստական մրցության ուժը նրա մասսայականության մեջ է։ Ուստի անհրաժեշտ է հասնել այն բանին, որ մրցություն ծավալվի յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվում՝ բրիգադներում, տեղամասերում, ֆերմաներում։

ՍՄԿԿ XXVI համագումարից հետո անցած ժամանակաշրջանում աշխատավորական շատ կոլեկտիվներում էական շտկումներ ու բարեփոխումներ եղան աշխատանքային նվաճվելիք բնագծերում։ Բացվեցին գործունեության նոր բնագավառներ, առաջ քաշվեցին ծառացած պրոբլեմների լուծման նոր ուղիներ. սա է այն հիմնականը, որ ձեռք բերվեց քաղաքական, գաղափարական-դաստիարակչական աշխատանքների շնորհիվ, կուսակցական կազմակերպությունների ակտիվ գործունեության շնորհիվ։ Ակտիվորեն մասնակցելով տասնմեկերորդ հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար ծավալված սոցիալիստական մրցությանը՝ պետք է մշտապես որոնել արտադրության արդյունավետության բարձրացման նոր ուղիներ, հաստատակամորեն պայքարել գիտատեխնիկական առաջընթացի զարգացման համար, ձգտել դառնալ կոմունիստական աշխատանքի հարվածայիններ— ահա թե ինչի վրա պետք է բևեռել ուշադրությունը։

ՍՄԿԿ XXVI համագումարը խնդիր առաջադրեց ավելի բարելավել սովետական մարդկանց դաստիարակությունը սոցիալիստական հայրենասիրության, ժողովուրդների եղբայրական բարեկամության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով։ Հանրապետության աշխատավորները հպարտորեն են շարունակում ազգերի բարեկամության լենինյան ավանդույթները։ Կուսակցական կազմակերպություններն այդ գործում ուսանելի և դրական փորձ են կուտակել՝ այդ աշխատանքներում հենվելով մարքսիզմ-լենինիզմի գաղափարների կենսական արմատների վրա։ Միասնություն, փոխօգնություն, բարեկամություն, առաջընթաց— ահա այն հարաբերությունները, որ հատուկ են եղբայրական հանրապետությունների աշխատանքային պրակտիկային։

Հայաստանի կոմկուսի XXVII համագումարում նշվեց այն խոշոր ձեռքբերումները, որոնց հասել են սկզբնական կուսակցական կազմակերպությունները հանրապետության աշխատավորության ինտերնացիոնալ դաստիարակության գործում։ Այդ առումով հսկայական նշանակություն ունեն Հայաստանի, Վրաստանի, Ադրբեջանի և Ռոստովի մարզի աշխատավորական կոլեկտիվների միջև ծավալված գործարար սոցիալիստական մրցությունը, գաղափարական համատեղ միջոցառումների անցկացումը։ Լայնորեն նշվում են եղբայրական հանրապետությունների ազգային տարելիցները, մեծ տեղ է տրվում փոխայցելություններին, ինտերնացիոնալ բարեկամության երեկոներին, համատեղ աշխա-



տանքին՝ երկրի խոշորագույն կառույցներում, որտեղ քաղաքացիության բարձր գաղափարների հետ միասին ծնվում են նաև բարեկամության և եղբայրության միանգամայն նոր երանգներ։

Գաղափարաքաղաքական, դաստիարակչական աշխատանքի հիմնական բովանդակությունը ժողովուրդների լենինյան բարեկամության ըստ ամենայնի ամրապնդումն է, երիտասարդ սերնդի դաստիարակումը ինտերնացիոնալ բարեկամության վեհ զգացմունքերով ու գաղափարներով, մեծագույն սիրով ռուս մեծ ժողովրդի, եղբայրական մյուս ժողովուրդների նկատմամբ։

Անհրաժեշտ է նկատի առնել, որ մեր գաղափարական թշնամիները, բուրժուական ողջ պրոպագանդան, համաշխարհային մասշտաբով դասակարգային հակամարտությունների սրման ժամանակակից պայմաններում, լարում են իրենց բոլոր ուժերն ազդելու սովետական մարդկանց գիտակցության վրա, թունավորելով նրանց շովինիզմի ու նացիոնալիզմի, գաղափարական արժույթների վերագնահատման, եսամոլության թույնով։ Այս ամենից ելնելով՝ պետք է ակտիվորեն օգտագործել պրոպագանդայի բոլոր ձևերն ու մեթոդները բուրժուական գաղափարախոսության և բարոյականության ամեն մի դրսևորման դեմ. այդ պայքարին հաղորդել հարձակողական բնույթ, հակապրոպագանդա մղել բարձր մակարդակով՝ այդ գործում ընդգրկելով ողջ գաղափարական ակտիվը։

Հարկավոր է հաշվի առնել բուրժուական գաղափարական ներթափանցման խիստ քողարկված ու նուրբ եղանակները, որոնք անընդհատ փոփոխվում են աշխարհում տեղի ունեցող նոր պրոցեսներին զուգընթաց։ Ուստի պետք է արագորեն արձագանքել կյանքի փոխակերպվող պահանջներին, ավելի կատարելագործել գաղափարական աշխատանքը։ Միաժամանակ պետք է ուժեղացնել պայքարը քաղաքական-դաստիարակչական աշխատանքների բարելավմանը խոչընդոտող բոլոր տեսակի երևույթների դեմ։

Այն նոր խնդիրները, որ կուսակցության XXVI համագումարը դրել է պրոպագանդիստական կադրերի, մասսայական ինֆորմացիայի, կուլտուր-լուսավորական հիմնարկությունների առջև, պահանջում են դաստիարակչական աշխատանքի արմատական կատարելագործում, տեխնիկական զինանոցի ավելի արդյունավետ օգտագործում։

ՍՄԿԿ XXVI համագումարը վերստին շեշտեց լենինյան այն միտքը, որ մասսայական ինֆորմացիայի միջոցները, մամուլը, հեռուստատեսությունը, ռադիոն գաղափարական հզոր զենք են մասսաների կոմունիստական դաստիարակության, նրանց ուժերը կազմակերպելու և մոբիլիզացնելու, կուսակցության վիթխարի ծրագրերը իրականացնելու համար։

Կոմունիստական շինարարության մասշտաբային խնդիրները զարգացած սոցիալիզմի պայմաններում պահանջում են, որպեսզի կուսակցության համագումարի որոշումները յուրացնի յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր աշխատավոր, և դա կոնկրետ փաստերով, այդ փաստերի խոր իմացությամբ, գործնականությամբ, կուսակցական կրքոտությամբ։ Լինել հետևողական, արձագանքել կյանքի հրատապ պրոբլեմներին, տիրապետել խոսքի մոբիլիզացնող ուժին— ահա ժուռնալիստական կադրերին առաջադրվող այն խնդիրները, որոնց լուծման գործում խոշոր ու պատվաբեր է լրագրողի դերը։

Բարձր քաղաքացիականություն, կուսակցականություն, անհաշտվողականություն թերությունների հանդեպ, ակտիվ դիրքորոշում առաջացած պրոբլեմների լուծման գործում, կյանքի, իրադարձության խոր իմացություն, կրքոտ վերլուծություն— ահա այն էականը, որ XXVI համագումարը բանաձևեց որպես սովետական գրականության ու արվեստի հիմնական խնդիրներ։ Ապրել ժողովրդի շահերով, ծառայել կոմունիստական բարձր իդեալներին, ունենալ հստակ դիրքորոշում՝ հանուն աշխատավոր, կոմունիզմ կառուցող մարդու, հանուն նրա երջանկության։ Գեղարվեստական ստեղծագործության գնահատման չափանիշը սովետական իրականությունում եղել ու շարունակում է մնալ այն, թե ինչքանով է արվեստի գործը ծառայում կոմունիստական հասարակարգի մարդու

դաստիարակությանը, կոմունիզմ կառուցողի կերպարի խոր, ճշմարտացի կերտմանը, կոմունիզմի պրոգրեսիվ երթի հաջողությանը։

Մարքս-լենինյան տեսության, ՍՄԿԿ ողջ գործունեության, քաղաքականության իմացությունը պետք է դառնա սովետական յուրաքանչյուր մարդու համոզմունքը։ Անհրաժեշտ է առաջադրված խնդիրների կոմպլեքսային լուծման համար կենտրոնացնել կուսակցական, սովետական, հասարակական կազմակերպությունների ողջ աշխատանքը, գործնականում ապահովելով յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր աշխատավորի գաղափարական, քաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության միասնությունը։

Աշխատավորական մասսաների դաստիարակությունը կոմունիստական իդեալներին խոր նվիրվածության ոգով կուսակցական աշխատանքի կարևոր ճակատն է։ Ինչքան որ նշանակալի լինեն մեր հասումները գաղափարաքաղաքական, դաստիարակչական աշխատանքներում, այնքան հսկայական կլինեն մեր հաջողությունները Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVI համագումարի որոշումների կենսագործման բնագավառում։

Մեր կուսակցության համաժողովը ստեղծագործ աշխատանքի նոր հորիզոններ բացեց սովետական ժողովրդի առջև։ Նրա որոշումներն ու փաստաթղթերը հիրավի պատմական ուղենիշ են 80-ական թվականների հզոր վերելքի համար, դարձել են գործողության ուղեցույց սոցիալ-տնտեսական և հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառների համար։

Ինքնին հասկանալի է, որ այսօր գաղափարախոսական ճակատի հիմնական խնդիրը՝ հանրապետության բոլոր աշխատավորների ջանքերի մոբիլիզացումն է առաջադրված վիթխարի ծրագրերի կենսագործման համար։ Ծրագրեր, որոնք նոր լույս են սփռում կոմունիզմի կառուցման ճանապարհին։

Անկասկած, ՍՄԿԿ XXVI համագումարի փաստաթղթերը, դրանց բարձր ստեղծագործական ոգին յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության և բոլոր աշխատավորական կոլեկտիվների, յուրաքանչյուր սովետական մարդու համար հզոր խթան կդառնան կոմունիստական շինարարության ասպարեզում նոր սխրանքներ կատարելու, նոր բարձունքների հասնելու համար։

# ՄԵՐ ԳՈՐԾԵՐՆ ՈՒ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ

**Հ. Ա. ՕՀԱՆՅԱՆ**
**ՀԿԿ Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղար**

ՄԵԿ ԱՄԻՍ ԱՌԱՋ ավարտվեց ՍՄԿԿ XXVI համագումարը։ Ինձ ևս բախտ վիճակվեց ներկա լինել սովետական կոմունիստների մեծ համաժողովին, դառնալ մեր հայրենիքի տնտեսական և սոցիալական հետագա զարգացման հոյակապ կանխագծումների քննարկման ու հաստատման անմիջական մասնակիցը։

Համագումարն ամենայն խորությամբ ընդհանրացրեց կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի ծավալած կազմակերպական, քաղաքական և գաղափարախոսական բազմաբեղուն գործունեության, ժողովրդական տնտեսության համակողմանի վերելքի գլխավոր արդյունքները, սահմանեց կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության հիմնական խնդիրները, նշեց երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման կոնկրետ ուղիները։ «Ժողովրդական տնտեսության զարգացման արդյունքները,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— համոզիչ կերպով հավաստում են կուսակցության տնտեսական ստրատեգիայի ճշտությունը։ Երկիրը էականորեն առաջ է շարժվել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման բոլոր ուղղություններով»։ Ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակամիջոցի հիմնական ուղղությունների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում մարմնավորվել է կուսակցության տնտեսական ստրատեգիայի հաջորդայնությունը, հաշվի են առնվել այն կոնկրետ պայմանները, որոնցում զարգանալու է երկիրը։ ՍՄԿԿ XXVI համագումարը սահմանեց կուսակցության, սովետական ժողովրդի պայքարի ստրատեգիան ու տակտիկան կոմունիստական շինարարության նոր փուլում։

Կուսակցության յուրաքանչյուր համագումար հնարավորություն է ընձեռում տեսնելու և՛ անցած ուղին, և՛ գալիքի հորիզոնները։ ՍՄԿԿ XXV համագումարից հետո անցած ժամանակաշրջանում մեր երկրի ներքին և արտաքին քաղաքականության ոլորտում ձեռք բերված վիթխարի հասումները, սոցիալիստական հասարակության հարաճուն զարգացումն այդ համաժողովի կենարար գաղափարների կենսագործման արգասիք են։ Դրանք համոզիչ կերպով ցուցադրում են մեր կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի լենինյան գծի իմաստությունը, նրա տնտեսական ստրատեգիայի գիտական հիմնավորվածությունը։

Միութենական հանրապետությունների էկոնոմիկան ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության ամբողջական օրգանիզմի բաղկացուցիչ մասն է։ Այսօր բոլոր հիմքերն ունենք ասելու, որ մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունը ևս հաջողությամբ լուծեց ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած քաղաքական, տնտեսական, սոցիալական ու գաղափարախոսական խնդիրները և իր արժանի ավանդը մուծեց մեր ընդհանուր առաջընթացում։ Հանրապետության էկոնոմիկայի կառուցվածքի որակական բարելավման, նրա պրոգրեսիվ ու հեռանկարային ճյուղերի զարգացման խնդիրները լուծվեցին գիտականորեն, հիմնավոր ձևով։ Այդ գործում հսկայական նշանակություն ունեցան Հայկական ՍՍՀ էկոնոմիկայի զարգացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ վերջին տարիներին ընդունած որոշումները։ Դրանք մեր հանրապետության նկատմամբ ՍՄԿԿ Կենտկոմի, սովետական կառավարու-

կան բյուրոյի փորձնական, «Ավտոմատիկա» սարքաշինական, ճշգրիտ հաստոցների, լուսատեխնիկական, ավտոգենային մեքենաշինության գործարաններում։ Մեքենաշինական ձեռնարկություններում զգալի աշխատանք կկատարվի արտադրության տեխնիկական վերազինման ու առաջընթացի ապահովման, ժամանակակից պահանջները բավարարող և միջազգային ստանդարտին համապատասխանող արտադրատեսակների արտադրության յուրացման և թողարկման ասպարեզում։ Առաջիկա հինգ տարում կյուրացվի մեծ քանակությամբ ավտոգենային սարքավորումների և լուսատեխնիկական սարքերի արտադրությունը։ «Ավտոմատիկա» գործարանում նշանակալիորեն կընդլայնվի վերլուծական սարքերի, ճշգրիտ հաստոցների գործարանում՝ թվածրագրային կառավարման հաստոցների արտադրությունը։

Տասնմեկերորդ հնգամյակում էապես կզարգանա թեթև արդյունաբերությունը։ Այդ ճյուղի արտադրանքի ծավալը 1985 թ., նախորդ հնգամյակի վերջին տարվա համեմատությամբ, կաճի 36 միլիոն ռուբլով։ Տրիկոտաժի արտադրական միավորումում կգործարկվի նոր, հզոր մասնաշենք, իսկ կարի արտադրական միավորման գլխամասային ձեռնարկության համար Բաղում թաղամասում կկառուցվի հինգ հազար աշխատատեղով նոր ֆաբրիկա։ Գեղարվեստական կոմբինատում, արտադրական նոր մասնաշենքի կառուցմամբ, արտադրության ծավալը կաճի 26 տոկոսով։

ՍՄԿԿ XXVI համագումարի հաստատած հիմնական ուղղությունները բովանդակում են այն բոլոր միջոցառումները, որոնք նպատակելու են աշխատավորական կոլեկտիվների սոցիալական զարգացմանը, սովետական մարդկանց նյութական բարեկեցության բարելավմանը, կուլտուրական մակարդակի բարձրացմանն ու հոգևոր աշխարհի հարստացմանը։ Հնգամյա պլանով նախատեսվում է քաղաքում ընդլայնել կրթական, մշակութային և առողջապահական օջախների ցանցը, կառուցել դպրոցական ու նախադպրոցական հիմնարկություններ, բնակչության բազմաբնույթ սպասարկման ծառայությունների շենքեր։ Կպահպանվեն բնակարանային շինարարության ներկայիս տեմպերը։ Քաղաքում ծնունդ կառնեն նոր բնակելի թաղամասեր։ Խոշոր միջոցներ կհատկացվեն շրջակա միջավայրի մաքրության, հանգստի գոտիների ընդլայնման, ջրամատակարարման և սոցիալ-կուլտուրական այլ նպատակների համար։ Ընդհանուր առմամբ նոր հնգամյակում ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները կհասնեն ավելի քան 155 միլիոն ռուբլու, որը 12 տոկոսով գերազանցում է տասներորդ հնգամյակի մակարդակը։

Արդյունաբերական ձեռնարկությունների և շինարարական կազմակերպությունների սկզբնական կուսկազմակերպությունները, ՍՄԿԿ XXVI համագումարի պահանջների լույսի ներքո, լայնորեն քննարկել են նոր հնգամյակում իրենց առջև ծառացած խնդիրները և միջոցառումներ են մշակել դրանք լուծելու համար։ Համագումարի որոշումները նոր լիցք են հաղորդել աշխատավորական կոլեկտիվներին։ Ամենուրեք պատրաստակամություն են հայտնում մոբիլիզացնել բոլոր ուժերը, գործի դնել առկա հնարավորություններն ու ռեզերվները՝ նոր հնգամյակի առաջին իսկ տարվանից պետական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները բարձր ցուցանիշներով կատարելու, արտադրության աճի նախատեսված տեմպերն ապահովելու համար։ Կարի արտադրական միավորման կոլեկտիվը, ծանոթանալով ՍՄԿԿ XXVI համագումարի արդյունքներին, հանդես եկավ «Տասնմեկերորդ հնգամյակը՝ չորս տարում» նախաձեռնությամբ։ Իսկ համագումարի պատգամավոր Գրետա Հովհաննիսյանը խոստացել է նոր հնգամյակի իր անձնական պլանը կատարել 26 ամսում։

Յուրաքանչյուր հնգամյակ, լուծելով սովետական հասարակության սոցիալ-տնտեսական և նյութատեխնիկական առաջընթացի կարևոր ու անհետաձգելի խնդիրները, պատմական ուղենիշ է դառնում մեր հասարակության հետագա զարգացման ճանապարհին։ Նոր հնգամյակը նշանակալի փուլ կդառնա մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման վսեմ գործում։ Այն վերափոխումների արգասավոր ժամանակաշրջան կլինի նաև Կիրովականի համար։

---

# ՈՒՍՈՒՑՉԻ ՎԵՀ ԿՈՉՈՒՄԸ

ԱՍՅԱ ԽԱՆԱՆՅԱՆ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ և սովետական պետության մշտական հոգածության առարկան են ժողովրդական կրթության համակարգի կատարելագործումը, աճող սերնդի դաստիարակությունը։ Այդ հոգածությունը վառ կերպով դրսևորված է դպրոցի մասին ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության որոշումներում։

Սովետական ուսուցիչների բազմահազարանոց բանակը, ոգևորված իր աշխատանքի բարձր գնահատանքով, լի է վճռականությամբ՝ բոլոր ուժերը, գիտելիքները և ուսուցման ու դաստիարակման ողջ փորձը հաղորդելու կոմունիստական հասարակարգը կառուցողների պատանի հերթափոխին։ Իրենց աշխատանքում ուսուցիչներն օգտագործում են դասավանդման նոր մեթոդներ, ջանում մշտապես կատարելագործել մանկավարժական վարպետությունը, բարձրացնել դասավանդումների, սովորողների գաղափարաքաղաքական, բարոյական և աշխատանքային դաստիարակության որակն ու արդյունավետությունը։

Մեր երկրում ավարտվել է անցումն ընդհանուր միջնակարգ պարտադիր կրթության, որը կուսակցության, սովետական ժողովրդի, սոցիալիստական հասարակարգի վիթխարի նվաճումն է։ Սովորողների ուսուցման ասպարեզում խոշոր է դպրոցական ծրագրերի, դասագրքերի ու մեթոդական ձեռնարկների դերը։ Սակայն այդ ծրագրերը տարեցտարի բարդանում են, որը երեխաներին զրկում է նրանց մանկության անբաժանելի խաղերից։ Դա վաղուց դարձել է մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության քննարկման առարկա, և պատահական չէ, որ կուսակցության XXVI համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը այդ մասին ասաց. «Դա դժվարացնում է ուսուցումը, հանգեցնում երեխաների չարդարացված գերբեռնվածության։ Լուսավորության մինիստրությունը, մանկավարժական գիտությունների ակադեմիան պետք է անհապաղ շտկեն այդ վիճակը»։

Բանն այն է, որ ծրագրերի բարդացման պայմաններում դասաժամերը մնում են նույնը, որը դժվարացնում է ո՛չ միայն սովորողների, այլև ուսուցիչների վիճակը։ Որպիսի՜ վարպետություն ու հմտություն է անհրաժեշտ ուսուցչին առաջադրած նպատակին հասնելու համար։ Սովորողների գիտական մակարդակի բարձրացման նպատակով դպրոցներում կազմակերպվում են ֆակուլտատիվ պարապմունքներ։ Սակայն այստեղ ևս ուսուցիչը կաշկանդված է պարտադիր ծրագրով, սահմանափակված են նրա ստեղծարար գործունեության հնարավորությունները։ Բարդացվել են առաջինից մինչև տասներորդ դասարանների ծրագրերը, գրեթե բոլոր առարկաների առումով։ Շատ թեմաներ (մաթեմատիկայից, ֆիզիկայից, քիմիայից) բուհերում կրկին անցնում են, որով նույնպես չի արդարացվում դպրոցների ծրագրերի բարդացումը։ Ստացվում է այնպես, որ նույնիսկ ամենատաղանդավոր աշակերտները հավասարաչափ չեն յուրացնում նյութերը բոլոր առարկաներից, և բարձր դասարաններում, երբ աշակերտն արդեն ընտրում է իր մասնագիտությունը, նա դժվարանում է լրացնել բաց թողածը, իսկ հետևանքը— մոդայիկ դարձած ռեպետիտորությունը։ Դա այնքան սովորական է դարձել, որ ծնողները ռեպետիտոր են վարձում և այն ժամանակ, երբ դրա կարիքը չկա, երբ դպրոցի ուսուցիչն իր բազմամյա աշխատանքի ընթացքում հաստատուն գիտելիքների հաղորդմամբ և մասնա-

գիտության ընտրության գործում ցուցաբերած օգնությամբ արդեն աշակերտ-
ներին պատրաստել է բուհ ընդունվելու։ Այդ արդեն վիրավորական է և՛ ուսուց-
չի, և՛ դպրոցի համար։

Ավելացնենք նաև, որ դպրոցական ծրագրերի բարդությունը չի խանգարում
աբիտուրիենտներից քննություններ ընդունող որոշ ուսուցիչների հարցեր տալու
այդ ծրագրերից դուրս ևս։ Այս անհարիրությունը նույնպես վնասում է դպրոցի
հեղինակությանը։ Կուզենայինք, որ լուսավորության և բարձրագույն ու միջնա-
կարգ մասնագիտական կրթության մինիստրությունները ընդունելության քըն-
նությունների ժամանակ խիստ հսկողություն սահմանեին պետական դպրոցա-
կան ծրագրերի պահպանման վրա։

Դպրոցական ծրագրեր կազմելու համար հրավիրվում են սովետական
մանկավարժական գիտության լավագույն ուժերը— ակադեմիկոսներ, պրոֆե-
սորներ, դոցենտներ։ Այնուամենայնիվ, ծրագրերի բարելավման համար ան-
հրաժեշտ է, որ ծրագրեր կազմողներն ավելի սերտորեն համագործակցեն դըպ-
րոցների փորձառու մանկավարժների հետ, դպրոցներում իրենք դասեր տան,
քանի որ երեխաների հետ անմիջական շփման միջոցով միայն հնարավոր կլինի
պարզել նյութի ընկալման և փոխմատուցման մակարդակը, սահմանել այն
ժամանակը, որ պետք է աշակերտին՝ դասի նախապատրաստման համար։ Հարկ
է ծրագրերը կազմել այնպես, որ ինչպես երեխաները, նույնպես և ծնողները
շաբաթվա մեջ հանգստանան երկու օր. ծնողների հետ ավելի շատ հաղոր-
դակցվելու համար։ Դա հնարավոր է։

Դպրոցում ուսուցման ընթացքում մեծ է աշխատանքային դաստիարակու-
թյան ու սովորողների մասնագիտական կողմնորոշման դերը։ Բոլորին հայտնի
է ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի «Հանրակրթական դպրոց-
ներում սովորողների ուսուցման, դաստիարակության հետագա կատարելա-
գործման և նրանց աշխատանքի նախապատրաստելու մասին» որոշումը։ Այդ
մասին նշվել է նաև ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—
1985 թթ. և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղ-
ղություններում։ Այդ կարևոր քաղաքական փաստաթղթում նշված է. «Կատա-
րելագործել միջնակարգ դպրոցներում աշխատանքի դաստիարակության ձևերն
ու մեթոդները։ Ուժեղացնել աշխատանքը պատանիների մասնագիտական
կողմնորոշման բնագավառում»։ Գիտակցելով այդ հարցի կարևորությունը՝ ժո-
ղովրդական կրթության մարմինները, մանկավարժական կոլեկտիվներն անում
են ամեն բան կուսակցության և կառավարության որոշումների կենսագործման
համար։

Մեր քաղաքի դպրոցները մեծ հաջողությունների են հասել. ստեղծվել են
լավ հագեցված աշխատանքի ուսուցման արհեստանոցներ, առարկաների ու
տեխնիկական միջոցների կաբինետներ, իրականացվում է արտադրության և
բուհերի հետ սերտ կապը։ Աշակերտներն իրենց աշխատանքային հինգերորդ
քառորդի ընթացքում հաճույքով են աշխատում հանրապետության սովխոզնե-
րում ու կոլտնտեսություններում։ Քաղաքի շատ շրջաններ ունեն իրենց կոմբի-
նատները, ուր աշակերտները փորձառու դաստիարակ-ուսուցիչների ղեկավա-
րությամբ ձեռք են բերում բանվորական մասնագիտություններ։ Սակայն բոլոր
դպրոցներում չէ, որ ստեղծված են նման պայմաններ։ Այս ասպարեզում հատ-
կապես դժվարություններ կան Սպանդարյանի անվան շրջանում, ուր դպրոցա-
կան շենքերը նեղվածք են, չկան համապատասխան արհեստանոցներ, մինչև
օրս լուծված չէ շրջանային ուսումնական կոմբինատների ստեղծման հարցը, որը
չի կարող բացասաբար չանդրադառնալ երեխաների աշխատանքային դաս-
տիարակության և մասնագիտական կողմնորոշման վրա։

Դպրոցում մասնագիտության և աշխատանքային հմտության ձեռք բեր-
մանը նպաստում է նաև սոցիալական մի շատ կարևոր պրոբլեմի լուծումը։
Հայտնի է, որ շրջանավարտների միայն մեկ-երրորդն է ընդունվում բուհ և տեխ-
նիկում։ Դժվար չէ պատկերացնել մնացածի վիճակը, որը չունի կոնկրետ աշ-
խատանքի հմտություն, ոչ մի մասնագիտություն։ Իսկ եթե նա տիրապետի



որևէ մասնագիտության, ապա վստահորեն, ինքնուրույն կյանք կմտնի և ան-
շուշտ կգտնի իր տեղը կյանքում։

Խոսելով մասնագիտության ընտրության մասին՝ ուզում եմ անդրադառնալ
մի շատ կարևոր հարցի։ Դա տղամարդ-ուսուցիչների խնդիրն է։ Այժմ, չգիտես
ինչու, երիտասարդները մտածում են, թե մանկավարժությունը կանացի գործ
է։ Ուսուցչական կոլեկտիվներում տղամարդ-ուսուցիչների սակավաթվությունը
դրա վկայությունն է։ Իսկ ինչպե՞ս է դա ազդում տղաների դաստիարակության
վրա։ Մինչև Հայրենական մեծ պատերազմը դպրոցներում ուսուցիչների մեծ
մասը, հատկապես բարձր դասարաններում, տղամարդիկ էին և ակնբախ էր,
թե դա որքան դրական է անդրադառնում տղաների վրա։ Չէ՛ որ անմիջական
շփումը պատանիներին ո՛չ միայն հնարավորություն է ընձեռում հասակակից
ընկերուհիների հետ դրսևորած իրենց վարվելակերպում վեհանձնությամբ,
ազնվությամբ ու քաջությամբ ընդօրինակելու ուսուցիչներին, այլև մղում է
նրանց՝ գնալու սիրած ուսուցչի ճանապարհով, դառնալու ուսուցիչ։ Այդ հարցը
շատ բարդ է և անմիջապես լուծել այն հնարավոր չէ. երկար ժամանակ է
պետք։ Հարկ է օգտագործել բոլոր միջոցները ներկա վիճակն աստիճանաբար
բարելավելու նպատակով. պատանիներին դաստիարակել սովետական ակա-
նավոր մանկավարժներ Մակարենկոյի, Սուխոմլինսկու և այլոց դասական օրի-
նակներով։ Պրոպագանդել առաջավոր տղամարդ-ուսուցիչների փորձը, մամուլի
ուշադրության կենտրոնում պահել նրանց, ստեղծել հեռուստատեսային հրա-
պուրիչ կինոնկարներ։ Լավ կլիներ մանկավարժական բուհ ընդունվող տղա-
աբիտուրիենտների համար ստեղծել արտոնյալ պայմաններ։

Կուզեի անդրադառնալ մի հարցի ևս։ Վերջին տարիներին սահմանվել է
բուհ ընդունվողների ատեստատների մրցույթ։ Այդ մի կողմից խթանում է
աշակերտի եռանդը։ Նա գիտե, որ իր ջանքերը կգնահատվեն բուհ ընդունվելիս
և չի խնայում իր ուժերը՝ ձեռք բերելու խոր գիտելիքներ, ստանալու բարձր
գնահատականներով ատեստատ։ Այս տեսակետից այդ լավ է։ Մյուս կողմից՝
այն նպաստում է որոշ անցանկալի երևույթների զարգացմանը, որոնք բացա-
սաբար են անդրադառնում աճող սերնդի դաստիարակության վրա։ Ասենք
ավելի պարզ. բարձր դասարանի աշակերտները, հատկապես տասներորդցի-
ները, սկսում են լարված պարապել (ինքնուրույն կամ ռեպետիտորի հետ) այն
առարկաները, որոնք նա պետք է հանձնի բուհ ընդունվելիս և, բնականաբար,
նրա ուշադրությունից դուրս են մնում «երկրորդական» առարկաները, և սկըս-
վում են մայրերի ու հայրերի արշավանքներն իրենց երեխաներին բարձր գնա-
հատականներ նշանակելու խնդիրք-պահանջներով։ Եվ ո՛չ միայն այդ... Եվ
ահա հայտնվում են չվաստակած բարձր գնահատականներ, իսկ մեր տասը
տարվա դաստիարակությունն անհետ ցնդում է ծխի քուլայի պես, փլվում է
այն շենքը, որ ուսուցիչները, չխնայելով ուժ ու առողջություն, կառուցել էին
տարիների տքնաջան աշխատանքով։ Աշակերտի պատկերացմամբ դպրոցը ո՛չ
միայն գիտության պալատ է, այլև ամենաազնիվ, նվիրական զգացմունքների
պալատ։ Այսպես են դաստիարակել մանկավարժները, և հանկարծ այն փլվում
է մեկ օրում՝ ծնողների ջանքերով, ուսուցիչների համաձայնությամբ, եթե
նույնիսկ նման ուսուցիչները սակավաթիվ են։ Այս հարցը արմատական վերա-
նայման կարիք ունի։

Ջպետք է մոռանալ սովորողների շրջանում գաղափարադաստիարակչա-
կան աշխատանքների, գիտելիքները բարոյական կատարելության զենք դարձ-
նելու խնդրի, դրանք մարդու ներդաշնակ զարգացման նպատակին ծառայեց-
նելու կարևորության մասին։ Վերջին հաշվով մանկավարժներն ու ծնողները
հավասարապես պատասխանատու են աճող սերնդին բարոյական վեհ զգա-
ցումներով համակելու համար, քանզի բոլոր վրիպումներն ու թերությունները
ապագայում բումերանգի պես դառնում են մեծահասակների դեմ։ Այդ առիթով
ավելորդ չէ հիշել Ա. Մակարենկոյի խոսքերը. «Մեր երեխաները մեր ծերու-
թյունն են։ Ճիշտ դաստիարակությունը՝ մեր երջանիկ ծերությունն է, վատ
դաստիարակությունը՝ մեր ապագա վիշտը, մեր արցունքները, մեր մեղքն են
այլոց հանդեպ, ժողովրդի հանդեպ»։

*Աշակերտի ճիշտ դաստիարակության, նոր մարդու կերպավորման գործում շատ մեծ է ուսուցչի դերը, այդ աշխատանքը մանկավարժը պարտավոր է սկսել դպրոցի շեմին աշակերտի ոտք դնելուն պես, քանի որ այն ձեռք է բերվում բազմամյա, ամենօրյա տքնաջան աշխատանքով։ Յուրաքանչյուր ուսուցչի սրբազան պարտքն է աշակերտներին դաստիարակել սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով։ Այս գործում մեզ օգնում է մեր կուսակցության ու սովետական ժողովրդի հարուստ, սխրալի պատմությունը։*

*Սովորողների կրթության, աշխատանքային ու բարոյական դաստիարակության գործը բարելավելու համար մանկավարժը պետք է աշխատի բարեխղճորեն, բոլորանվեր, ամենից առաջ պահանջկոտ լինի իր նկատմամբ, հարստացնի իր գիտելիքները, օգտագործի դասավանդման առաջավոր մեթոդներ և, որ գլխավորն է, համակված լինի քաղաքացիականության վեհ ոգով. աշխատանքը ժողովրդական լուսավորության ընդգստանում նաև անձնուրացություն է պահանջում։*

*Ինչպես ասել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը. «Ոչ մի բան այնպես չի վեհացնում անհատին, ինչպես ակտիվ դիրքը կյանքում, գիտակցական վերաբերմունքը հասարակական պարտքի նկատմամբ, երբ խոսքի և գործի միասնությունը դառնում է վարքագծի ամենօրյա նորմ»։ Այս խոսքերն ամենից առաջ վերաբերում են ուսուցիչներին, որոնց դերը հույժ պատասխանատու և վճռական է նոր մարդու դաստիարակության, կերպավորման գործում։ «Այսօր գլխավորն այն է,— շեշտեց ՍՄԿԿ XXVI համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— որ դպրոցում բարձրացվի ուսուցման, աշխատանքային ու բարոյական դաստիարակության որակը, արմատախիլ արվի ձևականությունը ուսուցիչների և աշակերտների աշխատանքի արդյունքները գնահատելիս, գործնականում ամրապնդվի կյանքի հետ ուսման կապը, բարելավվի աշակերտների նախապատրաստումը հանրօգուտ աշխատանքին»։*

*Ահա ինչու այսօր առավել, քան երբևէ, անհրաժեշտ է, որ մանկավարժներն ունենան բազմակողմանի գիտելիքներ, հարուստ ներաշխարհ, ժամանակին համաքայլ ընթանալու ունակություն, վեհանձնություն, ազնվություն, հայրենասիրություն։ Ուսուցիչը պետք է օժտված լինի այս բոլոր հատկանիշներով անձնական օրինակով իր սաներին դաստիարակելու համար։ Ազնիվ, նվիրված վերաբերմունք այն գործի նկատմամբ, որը մանկավարժը դարձրել է իր կյանքի նպատակը, նվիրել իր ողջ գիտակցական կյանքը։ Այսպիսով միայն կարելի է կատարել կուսակցության ու ժողովրդի պահանջը։*

---

ՀԵՆՐԻԿ ԹՈՒՄԱՆՅԱՆ

# ԽՈՍՔ XXI ԴԱՐԻ ՔԱՂԱՔԱՑՈՒՆ

1.

Քո այդ նոր դարի վեհ բարձունքներից
Լսի՛ր ինձ, եղբայր, լսի՛ր ինձ նորից,
Դու, որ մարդկային մեր նոր պատմության
Շղթայազերծված հազարամյակի
Օրերն ես հաշվում,
Դու, որ այդ հեռվում
Հասել ես արդեն բանականության,
Մարդկային սրտի, մարդկային ոգու
Կուռ դարպասներին՝ կատարյալ շքեղ,
Խորհե՞լ ես արդյոք մի պահ այն մասին,
Թե ինչպե՞ս, ինչպե՞ս
Այդ ամենը քեզ տրվեցին այսքան
Լայն ու լիաբուռ,
Թե քանի՛, քանի՛ կամուրջ ամրակուռ
Ու պատնեշներ ենք հիմնել հորդահոս
Գետերի վրա,
Որ շունչը նրանց
Լույսի վերածված փռվի, տարածվի
Հեռո՛ւ և մոտիկ ճամփեքին բոլոր,
Նոր քաղաքների երկնաքերներում,
Մեր կապո՛ւյտ, կապո՛ւյտ հեռաստաններում,
Ծովի պես ծփող արտերի վրա,
Սիրով բաբախող մարդկային ազնիվ
Սրտերի վրա։

2.

Լսի՛ր, ինձ, եղբայր, լսի՛ր, բարեկամ,
Դու գիտե՞ս արդյոք, թե քանի անգամ
Արևը ծագեց, մայր մտավ նորից,
Թե քանի՛ անգամ բարիկադներից՝
Իր ազատության տենչով տոգորված
Մարդու պայքարի,
Նրա սրտաբուխ, հզոր երգերի
Եվ անկումների հառաչը լսվեց,
Մինչև լենինյան լույսը ճառագեց
Դիրքերի վրա մեծ Հոկտեմբերի,
Որն ամենավառ և ամենազոր
Պոռթկումն էր բոլոր ժամանակների,—
Մարդկային բազում հրաբուխներով,
Հոգսերով լեցուն քսաներորդ դարի...
Այդ Հոկտեմբերն էր,
Որ նոր պատմության հիմքերը դրեց.
Հին, բազմաչարչար այս մոլորակի
Վեցերորդ մասում

Հողը՝ գյուղացուն,
Եվ գործարանը բանվորին տվեց,
Ի լուր ամենքի
Խոսեց մարդկային ձայնով իր հզոր...

3.

Եվ եթե այսօր
Դու ապրում ես, կա՛ս,
Ու հասել ես արդ կատարելության
Այդ վեհ գագաթին,
Հարցրու միայն ինքդ քո սրտին,
Եվ սիրտդ կասի՝
Իր ամենօրյա ռիթմով շիտակ,
Թե ինչպես կապույտ այս երկնքի տակ
Քե՛զ տվեց իր ծով, ազնիվ քրտինքի
Վաստակը մաքուր
Փոթորիկների ու հրդեհների
Ցոլթայից անցած մեր սովետական
Ժողովուրդը մեծ,
Որն անապատի հողմերը սանձեց,
Մտավ կիրճերը,
Արևներ հանեց գետերի վազքից,
Սերմնացանի պես շողերը նրանց
Ցանեց լեռների, դաշտերի վրա,
Թեպետ երբեմն մի կտոր հացին
Կարոտ մնալով,
Բայց հոգու ամբողջ կրակը անմար
Կոմունիստական գալիք օրերի
Ծնունդին տալով,
Մաքուր պահելով այն խիղճը, որին
Չի՛ դավաճանել և ոչ մի անգամ,
Նույնիսկ լինելու կամ չլինելու,
Իր հոգեվարքի ծանր օրերին:

4.

Չի՛ դավաճանել,
Եվ այն խոսքերը, որ քո երգերում
Հնչում են հիմա անցած-գնացած
Օրերի մասին,
Դրանք խոսքեր չեն, և բառեր չեն սոսկ,
Այլ արյա՛մբ միայն ու մաքառումով
Քանդակված տողեր,
Հզոր արևի չմարող շողեր,
Որ նվաճել ենք փոթորիկների
Արհավիրքներում...
Եվ եթե այսօր քո երակներում
Արյունն է եռում մեծ նախնիներիդ,
Ապա դա նրանց կրակն է անմար,
Հո՛ւրն է անսպառ այն քաջաբազուկ,
Այն քաջակորով կոմունիստների,
Որոնք լույսն իրենց մինչ շողը վերջին
Քեզ են նվիրել...
Ինչպես որ ինքդ ես սրբությամբ երդվել,
Հիշի՛ր դու նրանց, բացիր էջերն այն,
Որոնք պատմում են
Դեռ չտեսնված, մեծ, հայրենական



Մեր գոտեմարտի
Ու անկոտրելի մեր կամքի մասին,
Ապավինելով այն մե՛ծ հավատին,
Ու այն մե՛ծ հույսին,
Որ պիտի հաղթենք, թեկուզ մի բուռ հող
Մնացած լինի մեր ոտքերի տակ,
Երկինքը մաքուր, ջինջ ու կապուտակ
Չէ՛ր կարող անվերջ մնալ ամպերի
Երամով պատվել,
Այս հողագունդը պետք է պտտվեր
Արևի շուրջը՝ իր բնականոն
Ընթացքով միայն,
Ճակատամարտն այն,
Որ մենք տվեցինք մարդկության բախտի
Փրկության համար,
Դեռ հիշվի պիտի, հիշվի՛ դարեդար,
Եվ ճառագայթվող իր լույսը հանձնի
Նոր սերունդներին՝
Նոր արևների ծնունդի համար:

5.

Գիտեմ, դու կինոէկրաններից ես
Ճանաչում միայն քո նախնիներին,
Բայց նայի՛ր անմար կրակի տեսքով
Վառվող, բոցկլտող հուշարձաններին,
Որոնք պահում են հիշատակն անմեռ
Մեծ պատերազմի դաշտերում ընկած
Հայտնի և անհայտ քաջ զինվորների...
Հարյթ, մարմարինե այս սալի առջև
Իջի՛ր ծնկաչոք,
Գլխարկդ հանի՛ր,
Իմացիր սակայն,
Որ հարթ չի եղել ուղին այն դժվար,
Որով անցել են այդ զինվորները՝
Կոմունիստական իրենց հավատի
Երդումով հպարտ,
Հավե՛րժ մնալով քեզ նման առույգ
Ու երիտասարդ:

Այդ մարմարինե սալերի վրա
Քանի՛ մայրերի արցունք է թափվել,
Բյուրեղացել ու ձուլվել է քարին,
Կյանք տալով կարմիր ա՛յն մեխակներին,
Որ նորապսակ զույգերն են բերում,
Եվ գարնանաշունչ այդ ծաղիկներում
Տեսնում են իրենց սերը նոր ծաղկած,
Սե՛րն այն զինվորի,
Որի շուրթերից
Դեռ հազիվ էին լսվել սրտաբաց
Խոստովանության ազնիվ շշուկներ:

6.

Մե՛ծ, քսաներորդ, անհեղ դարը մեր
Հեռո՛ւ, հեռավո՛ր, դեռ չգտնված
Մոլորակների գաղտնիքը բացեց,
Ատոմը ճեղքեց
Եվ մարդկությանը տարավ նոր ուժի

Ոտնահետքերով,
Թեպետ և գիտենք՝ այդ նույն ձեռքերով,
Որով ատոմը կյանք առավ մի օր,
Քաղաքներ ընկան ու կործանվեցին,
Հիրոսիմայի արյունաթաթախ
Ա՜յն լուսաբացին,
Երբ հող ու երկինք իրար խառնվեցին,
Ծովը ծառս եղավ,
Եվ ալիքները այնպիսի՜ ուժով
Իրար զարկվեցին,
Որոնց շառաչը լսվում է նույնիսկ
Այս ժամի՜ն, այսօ՜ր,
Եվ խառնվում է բազում մայրերի
Հառաչին այն խոր,
Որից լեռներն են նույնիսկ արտասվում։

7.

Վտանգն ատոմի կախված էր, այո՜,
Մեր դարի վրա,
Մի խելացնոր կարող էր հանկարծ
Սեղմել մատնաչափ կոճակը նրա
Եվ հողագունդը խորտակել մի օր,
Գորշ ունայնության գիրկը մատնելով
Մարդկային մտքի, խղճի ու սրտի
Ստեղծած բոլոր
Ա՜յն արժեքները, որոնցով ապրում,
Որոնցով իրոք հպարտանում ենք
Ինքներս մեր մեջ,
Անապատներին տալով հարություն,—
Որպես բնության մեծ գլուխգործոց,
Որպես շնչավոր արարածների
Կատարելություն։

***

Բայց մենք բռնեցինք ձեռքերը չարի,
Որ շարունակվի պտույտն աշխարհի
Իր բնականոն ընթացքով միայն,
Մարդուն հրեղեն թևեր տվեցինք՝
Տիեզերական հեռաստաններին
Հասնելու համար,
Մեր հողագնդի լույսն ու ստվերը
Տեսնելու համար,
Ասելու համար այն խոսքը, որին
Սպասել էինք երկա՜ր, շա՜տ երկար,
Մինչ գագաթնային այն վայրկյանը գար,
Երբ մա՜րդը, մա՜րդը աստղերին հասավ,
Ու հանկարծ տեսավ
Իր երազանքի գույները բոլոր...

8.

Եվ այդ դարը նոր,
Ուր ապրում ես դու՝
Աշխարհի բոլոր կոմունիստների
Տենչանքին հասած,
Իր հոգու շռայլ դռները բացած՝
Ապավինում է քեզ ու քո լույսին,
Հավատի՜, հույսի՜ շուշաններ ցանում,
Եվ սերունդներին, որ գալու են դեռ,
Շքեղ լույսերի ծո՜վ է խոստանում։

---

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵԽԱՆԻԶՄԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՊԱՅՄԱՆԸ

**Ա. Հ. ԻՆԿԻԼԻԿՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու
**Վ. Կ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ**

*ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵԽԱՆԻԶՄԻ կատարելագործման պրոբլեմը ՍՄԿԿ վարած ստրատեգիայի կարևորագույն և հանգուցային հարցերից մեկն է։ Մի հարց, որի դրական և ժամանակին լուծումը չապես կնպաստի մեր առաջընթացի արդյունավետությանը։ Խելոք ու բանիմաց տնտեսավարը լավ գիտե, որ տնտեսական գործողության բազմակողմանի ելևէջներում ամենափոքր կամ աննշան մասնիկը, եթե մի քանի ժամ դադարեց գործելուց, ապա ողջ տնտեսության մեջ խանգարում է գոյանում, իսկ չապես տուժում է ընդհանուր գործը։*

*Ահա թե ինչու ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական փաստաթղթերում քանիցս շեշտվում է տնտեսական մեխանիզմի կատարելագործման խիստ կարևորությունը։ Հիրավի, եթե տնտեսության մեխանիզմը գործում է նորմալ կերպով, ապա կարելի է իրականում ստանալ պլանավորված արդյունք ոչ միայն ըստ քանակի, այլև ըստ որակի։*

*Այսպիսով, երկրի էկոնոմիկայի զարգացման արդի փուլում կենսական անհրաժեշտություն է տնտեսական մեխանիզմի կատարելագործումը, որը մեծապես նպաստում է գիտության և արտադրության կոմպլեքսային զարգացմանը, արտադրության արդյունավետության բարձրացմանը։ Այդ առումով հրատապ է գիտության, տեխնիկայի և արտադրության փոխադարձ կապի հարցերի համակողմանի ուսումնասիրումը։ Նշված խնդիրների լուծման համար անհրաժեշտ է բարելավել հանրային արտադրության կազմակերպումը, արտադրաուժերն ու ռեսուրսները կենտրոնացնել ժողովրդական տնտեսության հիմնական պրոբլեմների լուծման վրա։*

*ՍՄԿԿ XXVI համագումարը լուրջ խնդիրներ դրեց կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների, գիտահետազոտական և նախագծային կազմակերպությունների ու ձեռնարկությունների առջև, պահանջեց հետևողականորեն բարձրացնել արտադրության արդյունավետությունը և բարելավել արտադրանքի որակը։ Այդ առնչությամբ կարևոր է ուժեղացնել մինիստրությունների ու գերատեսչությունների պատասխանատվությունը ճյուղային գիտական հիմնարկություններում կատարվող հետազոտությունների պատշաճ մակարդակի համար՝ ավարտուն գիտական մշակումների արդյունքներն արտադրության մեջ ավելի արագ ներդնելու նպատակով։*

*Մեր հանրապետությունը տասներորդ հնգամյակում էական հաջողությունների հասավ արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման, ժողովրդական տնտեսության գիտատեխնիկական առաջընթացի գործում։ Գիտնականների ակտիվ մասնակցությամբ տասներորդ հնգամյակում ստեղծվել են 328 նոր մեքենաներ, սարքավորումներ, սարքեր և ավտոմատացման միջոցներ։ Արտադրության մեջ ներդրվել են 94,3 հազար գյուտարարական և ռացիոնալիզատորական առաջարկություններ, մշակվել է որակի կառա-*

վարման հանրապետական համակարգ։ Միայն 1980 թ. պետական որականիշ է ստացել 1245 արտադրատեսակ, դրանց ընդհանուր թիվը հասցնելով 2600-ի։

Սակայն դեռևս քիչ չեն այնպիսի ձեռնարկությունները, որոնք թողարկում են տեխնիկապես հնացած, ցածրորակ արտադրատեսակներ։ Ուսումնասիրությունները վկայում են, որ ցածր արդյունավետության հիմնական պատճառներն են գիտության և արտադրության դեռևս թույլ կապը, արտադրության համակենտրոնացման ու մասնագիտացման ոչ բավարար տեմպերը, արտադրանքի և սարքավորումների համակազմի դանդաղ նորացումը, արտադրապրոցեսների մեքենայացման և ավտոմատացման ցածր մակարդակը, արտադրության կառավարման կոմպլեքսային միջոցառումների դանդաղ արմատավորումը, ցածրորակ հումքի, կիսաֆաբրիկատների և կոմպլեկտավորող առարկաների մատակարարումը։ Տեխնիկական մակարդակի ու որակի պլանավորման բնագավառում դեռևս լուծված չէ միասնական գիտատեխնիկական, կազմակերպական և տնտեսական քաղաքականություն վարելու հարցը։

Հանրապետությունում ունենք մեծ քանակությամբ գիտահետազոտական ինստիտուտներ, կոնստրուկտորական բյուրոներ և բուհեր (110-ից ավելի), որոնց մի մասը միութենական աշխատանքային բաժանման մեջ գիտատեխնիկական պրոբլեմների լուծման ասպարեզում իր արժանի տեղն ունի։ Իհարկե, այդ հաստատություններն աշխատում են սահմանված պլաններով և թեմատիկայով, սակայն, մեր կարծիքով, ավելի նպատակահարմար է ուժեղացնել դրանց կապը արտադրության հետ, որն անշուշտ կխթանի հանրապետության ժողովրդական տնտեսության գիտատեխնիկական առաջընթացը, արդյունավետության բարձրացման ռեզերվների հայտնաբերումը։ Մինչդեռ մեր գիտական հաստատություններից շատերի գործունեությունը քիչ է առնչվում հանրապետության էկոնոմիկայի կարիքների հետ։ Այսպես, նրանք չեն սպասարկում հանրապետության էլեկտրատեխնիկական ձեռնարկությունների մեկ երրորդին։ Այնպիսի հզոր արտադրամիավորումներ, ինչպիսիք են՝ «Հայէլեկտրալույսը» և «Հայէլեկտրասարքը», էլեկտրատեխնիկական գիտահետազոտական ինստիտուտների տեսադաշտից դուրս են մնացել, իսկ հատուկ կոնստրուկտորական բյուրոների կարողություններն ակնհայտորեն չեն բավարարում արտադրության աճող պահանջները։ Հանրապետության քիմիական ձեռնարկությունների զգալի մասը ապահովված չէ հանրապետության հաստատությունների մշակումներով, չնայած որ մեզ մոտ են գործում ՍՍՀՄ քիմիական արդյունաբերության մինիստրության 7 գիտական հիմնարկություններ և Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի 5 ինստիտուտներ։

Հանրապետական ենթակայության գիտահետազոտական ինստիտուտների և կազմակերպությունների մշակումներից արտադրության մեջ ներդրվում են շուրջ 20 տոկոսը, իսկ միութենական ենթակայության գիտահետազոտական ինստիտուտների և կազմակերպությունների գծով՝ 52 տոկոսը։ Գիտահետազոտական մշակումների թույլ արմատավորումը բացատրվում է ինչպես կազմակերպական, տնտեսական թերություններով, այնպես էլ մշակումների տեխնիկական ցածր մակարդակով։ Նման վիճակը բացասաբար է անդրադառնում նաև հնացած արտադրատեսակները արտադրությունից հանելու միջոցառումների վրա, քանի որ խախտվում է ըստ քանակի արտադրության պլանի կատարման հաշվեկշիռը։

Դրա վկայությունն է այն, որ 1976 թվականին արտադրությունից հանվել է 153 արտադրատեսակ, 1977-ին՝ 76, 1978-ին՝ 318, որից միութենական ենթակայության ձեռնարկությունների բաժինը համապատասխանաբար ըստ տարիների կազմում է 126, 46 և 167 անուն։ Ուստի տվյալ առումով միութենական-հանրապետական և հանրապետական ենթակայության ձեռնարկությունների բաժինն աննշան է։ Ստացվում է, որ տարեկան միջին հաշվով նորացվում է թողարկվող արտադրատեսակների մոտ 2,5 տոկոսը, իսկ արտադրությունից հանվում է 1,6 տոկոսը, որն ակնհայտորեն չի համապատասխանում գիտատեխնիկական առաջընթացի արդի պահանջներին։ Եվ պատահական չէ, որ հանրապե-



տությունում չկա ոչ մի մինիստրություն, որտեղ որականիշով արտադրանքի
ծավալը կազմեր 50 և ավելի տոկոս։

Արտադրանքի տեխնիկական մակարդակի և որակի բարձրացման պլան-
ների ձևավորման վրա ազդող գործոնների ուսումնասիրությունն ու վերլուծու-
թյունը վկայում են, որ անթերի չէ նաև արտադրանքի տեխնիկական մակար-
դակի և որակի գնահատման վիճակագրական հաշվետվության կարգը։ Նախ,
դա վերաբերում է ատեստավորվող արտադրատեսակի և նմանօրինակ նմուշի
տեխնիկական ցուցանիշների ընտրությանը և միակերպմանը, ընթացակարգի
պահպանմանը։ Որպես կանոն, քարտերն անհրաժեշտ է մշակել նախագծման
կամ փորձնական նմուշի պատրաստման փուլում։ Մինչդեռ, դրանց նշանակալի
մասը կազմվում են սերիական արտադրության տեխնոլոգիական նախապատ-
րաստության ժամանակ և նույնիսկ արտադրության ընթացքում։ Քարտերը չեն
պարունակում տնտեսական մի քանի բնութագրեր, ինչպես արտադրանքի մեկ
միավորի պատրաստման համար կատարվող ծախսումները, տնտեսական ար-
դյունավետության ցուցանիշները, պատրաստման աշխատատարությունը, մե-
ծածախ գինը և այլն։ Ընդ որում, պրակտիկայում ձեռնարկությունների գործա-
ծած քարտերը տարբեր են ռեկվիզիտների որակով, ձևով և համապարփակու-
թյամբ։ Գործող քարտերում չկա աստիճանականություն, այսինքն՝ արտադրան-
քի ատեստավորման հաջորդ փուլի կանխատեսվող ցուցանիշները, օրինակ, դի-
նամիկ ստանդարտների նման։ Մինչդեռ այդպիսի քարտերի մշակումը կհեշ-
տացնի և կարագացնի ատեստավորման պրոցեսը։ Արտադրանքի տեխնիկական
մակարդակի և որակի պլանավորման խնդիրները լուծվում են վերահսկողու-
թյան ինֆորմացիոն քարտերի հիման վրա։ Դրանց միակերպացումն ու հարմա-
րեցումը մեքենայական մշակման համար՝ անհրաժեշտ նախադրյալ են կենտ-
րոնացված ճյուղային և ռեգիոնալ հաշվառման, արտադրանքի որակի վերլուծ-
ման, տեխնիկական մակարդակի գնահատման առումով։ Գնահատման այդպի-
սի մեխանիզմի բացակայությունը խանգարում է որականիշով արտադրանքի
թողարկման առաջադրանքի սահմանումին և դժվարացնում է վերահսկողու-
թյունը դրա կատարման ընթացքի նկատմամբ։

Հաստոցաշինության, էլեկտրամեքենաշինության, սարքաշինության, ավ-
տոմոբիլաշինության և այլ ձեռնարկությունների արտադրանքի տեխնիկական
մակարդակի և որակի ատեստավորման քարտերի ուսումնասիրությունը վկա-
յում է, որ նոր արտադրատեսակների համար մշակվող ցուցանիշները կազմ-
վում են անսիստեմ։ Դրա հետևանքով տեխնիկական այն բնութագրերը, որոնցից
հիմնականում ձևավորվում է տեխնիկական առաջընթացը, չեն կատարում
իրենց ֆունկցիան։ Գլխավորն է՝ որոշել այն ցուցանիշների կազմը, որոնք հար-
մար կլինեն օգտագործման, պարզ հաշվարկի և միատեսակ ծրագրավորման
համար։

Տեխնիկական մակարդակի ցուցանիշները նպատակահարմար է բաժանել
ըստ ընդհանրության մակարդակի, այսինքն՝ առանձնացնել այն ցուցանիշնե-
րը, որոնք բնորոշ են մեքենաների բոլոր դասերի, արտադրանքի և արտադրա-
տեսակերի խմբերի համար։ Ցուցանիշների նման կարգավորումը կնպաստի
արտադրանքի տեխնիկական մակարդակի ու որակի բարձրացմանը, պլանա-
վորման կատարելագործմանը։

Միասնական տեխնիկական քաղաքականության հաջող իրականացումը
պայմանավորված է այն բանով, թե ինչպես է կազմակերպված նոր տեխնի-
կայի ու տեխնոլոգիայի մշակման, ստեղծման և արտադրության մեջ արմա-
տավորման պրոցեսների կառավարումը։ Գիտատեխնիկական առաջընթացը և
«գիտություն-արտադրություն» ցիկլի միակցման բարդ պրոցեսի կառավարումը
մշտական կատարելագործում են պահանջում։

Տեխնիկական մակարդակի և որակի պլանավորման մեթոդների որոնում-
ները մինչև այժմ հասցրել են արտադրանքի որակի կառավարման ռեգիոնալ
սիստեմների մշակման, ինչպիսիք են որակի կառավարման հանրապետական,
ճյուղային և տեղական համակարգերը։ Դրանք իրենց միասնության մեջ կոմպ-
լեքսային-նպատակային գիտատեխնիկական ծրագրեր են։ Կառավարման այն

և տեղական կուսակցական ու սովետական մարմինների միջոցով, որոնք կօգնեն կառավարելու արդյունաբերության զանազան ճյուղերում նոր տեխնիկայի արմատավորման աշխատանքը։ Այսպիսով, «գիտություն-արտադրություն» ցիկլի բազմակողմանի պրոցեսը կատարելագործման ու արտադրության մեջ գիտական գաղափարների նյութականացման կազմակերպական նոր մեթոդների որոնումների կարիք ունի։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացումը և նրա հնարավոր պոտենցիալ արդյունքի ստացումը, արտադրության զարգացման առավելապես ինտենսիվ մեթոդներին անցումը պահանջում են լրիվ չափով օգտագործել զարգացած սոցիալիզմի, ամենից առաջ՝ կենտրոնացված պլանավորման առավելությունները։ Ընդ որում, անհրաժեշտ է համակողմանիորեն կատարելագործել պլանավորման սիստեմը, նպատակ ունենալով ժամանակին լուծել էկոնոմիկայի զարգացման տերիտորիալ և միջճյուղային բնույթի երկարաժամկետ պրոբլեմները։ Նման պրոբլեմների լուծման գործում հապաղումները չեն կարող փոխհատուցվել ընթացիկ պլանների մշակման ու կատարման կարգով։ Արդի պայմաններում նպատակահարմար է պլանները կազմել որպես տեխնիկական ու սոցիալական առաջընթացի խոշոր ուղղությունների իրագործման փոխկապակցված ծրագրերի համակարգ։ Ընդհանուր առմամբ խոսքն այն մասին է, որ տնտեսական լուծումների համակարգում ճիշտ զուգակցվեն կենտրոնացումն ու ապակենտրոնացումը։

Այսպիսով, ժողովրդական տնտեսության զարգացման նյութաիրային համամասնությունների համակարգ մշակելու համար կարևոր է օգտագործել մինչև այժմ նախապատրաստված և գործնականորեն ստուգված մի շարք ժողովրդատնտեսական մոդելներ։ Դրա հետ մեկտեղ, ճիշտ կլինի առ առավել կատարելագործել մոդելները, որ կարող է իրականացվել կառավարման բոլոր օղակների և մարմինների, ինչպես նաև գիտական կազմակերպությունների համատեղ ջանքերով։

Ի դեպ, մեր քննարկած պրոբլեմի վերաբերյալ ակադեմիկոս Աբել Աղանբեգյանը հետևյալ տեսակետն է արտահայտել. «Մեր երկրում կիրառվող տնտեսական նոր մեխանիզմը նպատակ ունի բարձրացնել հասարակական արտադրության արդյունավետությունը, արագացնել տնտեսական զարգացման տեմպերը։ Սակայն տնտեսական մեխանիզմի վերաբերյալ մեր գիտելիքները դեռևս չեն հասել այնպիսի մակարդակի, որը հնարավորություն ընձեռեր մոդելավորման օգնությամբ կամ ԷՀՄ-ով ուսումնասիրելու այդ մեխանիզմը, խաղարկելու այս կամ այն իրավիճակը, կանխատեսելու այս կամ այն փոփոխությունների հետևանքները խթանման գործում, ցուցանիշների համակարգում և այլն։ Մենք ընթանում ենք դեպի այդպիսի մոդելի կառուցումը և իսկապես կարող ենք առաջ շարժվել միայն այն դեպքում, երբ խորացնենք մեր գիտելիքները սոցիալիզմի օրոք արտադրական և սոցիալական հարաբերությունների վերաբերյալ։ Կարծում եմ, որ մեր տնտեսագիտությունը գտնվում է խոշոր հայտնագործությունների շեմին, ընդ որում, տեղի ունեցող պրոցեսների էության մեջ ներթափանցման այնպիսի հայտնագործությունների, որոնք վճռական ներգործություն կունենան բուն տնտեսական պրակտիկայի վրա» («Ленин, наука, молодежь», М., 1980, стр. 128)։

ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումների համակողմանի կիրառումը մեծապես կնպաստի երկրի էկոնոմիկայի տնտեսական մեխանիզմի կատարելագործմանը և գիտատեխնիկական պրոգրեսի առավել արագացմանը։

---

# ՄԱՅՐ ԲՆՈՒԹՅԱՆ ՀՈԳՍԵՐԸ ՄԵՐ ՀՈԳՍԵՐՆ ԵՆ

Ա. Հ. ՉԻԼԻՆԳԱՐՅԱՆ

ԱՐՏԱԴՐԱՄԻՋՈՑՆԵՐԻ ԱՐԱԳ զարգացման ու կատարելագործման և ազգաբնակչության նկատելի աճի շնորհիվ զգալի չափով ուժեղացել է հասարակության ներազդեցությունը բնության վրա։ Այն հիմնականում արտահայտվում է բնական հումքի արդյունահանման, վերամշակման, ինչպես և քաղաքաշինության, ճանապարհաշինության և այլ ոլորտներում։ Հասարակության նյութական բազայի ընդլայնման և մարդկանց հարմարակեցության բարելավման պրոցեսը զուգակցվում է մի շարք անցանկալի երևույթների հետ։ Օգտակար հանածոների ու ռացիոնալ օգտագործման հետևանքով բնական ռեսուրսների զգալի մասն սպառման վտանգի տակ է։ Աստիճանաբար նվազում են վերականգնվող միջոցները, տեղի է ունենում հողերի էրոզիա, ոչնչանում և պակասում են բույսերն ու կենդանիները, ինչպես նաև աղքատանում է առանձին ռեգիոնների բնությունը, պակասում է, աղտոտվում են օդային ավազանն ու ջրերը։ մարդուն շրջապատող միջավայրը, առաջանում են անապատներ, թթվածինը

Ինչ խոսք, ապականված արտաքին միջավայրը բացասաբար է անդրադառնում ողջ օրգանական աշխարհի, ինչպես և մարդու առողջության վրա։ Այս վիճակը չի կարող չանհանգստացնել հասարակության լայն խավերին։

Անցյալում ևս մարդը հաճախ բացասաբար է ներգործել բնության վրա, սակայն այն հիմնականում կրել է տեղական բնույթ և մեծ ազդեցություն չի ունեցել հասարակության զարգացման առաջընթացի վրա։ Բոլորովին այլ է պատկերը մեր օրերում։ Մարդու շրջակա միջավայրի անբավարար վիճակը նկատելի է համարյա բոլոր երկրներում։ Ավելին, մի երկրում առաջացած թունավոր գազերն ու կեղտաջրերը, օդային զանգվածների շարժման ու ջրային հոսքերի միջոցով հասնում են մյուս երկրները։ Այսպիսով, բնության պահպանության հարցերը համընդհանուր բնույթ են կրում։

Գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում բնության որակական կայունությունն արագ խախտվում է։ Վերջին տարիներին բավական սրվել է այնպիսի բնական ռեսուրսների պահպանության հարցը, որոնք ոչ հեռավոր անցյալում թվում էին անսպառ (օրինակ՝ ջուրը)։ Աճում են նաև արտադրության պահանջները բնական միջավայրի հանդեպ։ Այսպես, մի շարք հազվագյուտ մետաղների, էլեկտրոնային և օպտիկական սարքավորումների, անտիբիոտիկների և որոշ քիմիական նյութերի արտադրությունը հնարավոր է միայն օդի և ջրի մաքրության պայմաններում։ Միջավայրի նույնիսկ չնչին աղտոտվածությունը նշված արդյունաբերական ճյուղերում առաջացնում է տեխնոլոգիական լուրջ դժվարություններ։ Արտադրական վիթխարի պրոցեսները հարուցում են այնպիսի երևույթներ, որոնք նախկինում չկային, կամ հազվադեպ էին (սմոգ, լճերի և ջրամբարների էվտրոֆիկացիա և այլն)։ Նման անցանկալի երևույթ-

ների վերացումը կամ մեղմացումը պահանջում է հսկայական միջոցներ և մասնագիտական հատուկ միջոցառումներ։

Մինչև XX դարի 60-ական թվականները բնության պահպանության պրոբլեմը փորձում էին լուծել անձեռնմխելի տարածքների կազմակերպմամբ, այսպես կոչված, տարբեր տիպի արգելավայրերի միջոցով։ Սակայն այդ պրակտիկան լրիվ չլուծեց և չէր էլ կարող լուծել բնության պահպանության հարցերը։ Նման մոտեցումը պահանջում է արգելավայրերի անվերջ ընդլայնում, իսկ դա հաճախ հակասում է տնտեսության զարգացման պահանջներին։ Բացի դրանից, արգելավայրերի առկայությունը չի սահմանափակում շրջակա միջավայրի աղտոտումը, ավելին, արգելավայրերը նույնպես ենթակա են աղտոտման։ Վերջապես, անձեռնմխելիության տեսակետը փաստորեն հակադրվում է բնական համալիրների ռացիոնալ օգտագործմանը*։ Բնական ռեսուրսների պահանջն օրեցօր ավելանում է, և տնտեսական շրջանառության մեջ ներգրավվում են նորանոր խոշոր հողային ու ջրային զանգվածներ։

Հետևաբար, բնության պահպանության հարցերը պետք է խելացի զուգակցվեն բնական ռեսուրսների շահագործման ու վերարտադրության հետ։ Միայն նման եղանակով է ապահովվում էկոնոմիկայի հարաճուն զարգացումը։

Բնական միջավայրի ռացիոնալ փոփոխությունը հնարավոր է սոցիալիստական պլանային տնտեսավարման պայմաններում, երբ էկոլոգիական տեսանկյունից են կատարվում բնական կոմպլեքսների վերափոխման բոլոր աշխատանքների մանրակրկիտ, հանգամանալի ուսումնասիրումն ու համակողմանի հիմնավորումը։

Էկոլոգիական այս կարևորագույն պահանջի անտեսումը, որպես կանոն, հանգեցնում է մարդուն շրջապատող միջավայրի վատացման, կենսոլորտի առանձին կառուցվածքային տարրերի միջև դարերով հաստատված դինամիկ հավասարակշռության խախտման։ Այսպես, ծովերի ափերի ամրակայման միջոցառումներ իրականացնելիս, ափերի երկայնքով ձգվող կրաքարային ժայռերը (ջրային կենդանիների հիմնական ապաստարանները) սովորաբար պայթեցվում են և դրանց տեղը դրվում են ալիքապաշտպան բետոնե միջնորմներ ու պատնեշներ։ Այդ կառույցներն ունեն հարթ մակերես, զուրկ են խոռոչներից ու ապաստարաններից, որոնք անհրաժեշտ են ծովային կենդանիների (մանր ծովաձկների և ծովախեցգետինների) մաշկափոխման, գիշատիչներից թաքնվելու համար։ Այնտեղ, ուր կան նման ափապաշտպան կառույցներ, մանր ծովաձկների քանակը նվազել է 5—6 անգամ, մանր ծովախեցգետիններինը՝ 10, ծովախեցգետիններինը՝ 50—100 անգամ։

Թունաքիմիկատների, մասնավորապես ԴԴՏ-ի առանց վերահսկողության օգտագործումը հանգեցրել է այն բանին, որ դրա քանակության $^{2}/_{3}$ մասը մոլորակում պահպանվել է չտարրալուծված ձևով (վերջին 25 տարում տարածվել է մոտ 1,5 միլիոն տոննա)։ Էկոլոգիական առումով ինչպես հարկն է մշակված չէ Սևանա լճի ջրերի պաշարների օգտագործման հարցը, որը տակավին կարոտ է հանգամանալի ու գիտականորեն հիմնավորված ուսումնասիրման։

...Օրգանիզմների փոխազդեցությունը միջավայրի բաղադրամասերի հետ չափազանց բարդ ու բազմազան է։ Էկոլոգիական շատ կապեր օրգանիզմների, ինչպես և դրանց ու անկենդան միջավայրի միջև մինչև օրս էլ մնում են չբացահայտված։ Էկոլոգիական կապերի բարդության և բազմաստիճանության մասին նշել են շատ բնագետներ, սկսած Արիստոտելից։ Այս տեսակետից հետաքրքրական օրինակ է բերում Չ. Դարվինն իր Տեսակների ծագումը գրքում. նա ցույց է տալիս, որ կարմիր երեքնուկի բարձր բերքը (որքան էլ այդ զարմանալի է)

* Սակայն այդ չի նշանակում ազգային պարկերի, արգելոցների, արգելավայրերի և այլ տիպի բնատարածքների վերացում։ Ընդհակառակը, նման լանդշաֆտների պահպանումը նախատեղծ վիճակում, որպես բնության անձեռնմխելի էտալոններ, կարևոր նշանակություն ունի ներկա և գալիք սերունդների ու գիտական նպատակների համար։



պայմանավորված է կատվազգիների ցեղին պատկանող կենդանիների առկայությամբ (կարմիր երեքնուկի, իշամեղվի, մկան և կատվի միջև եղած էկոլոգիական կապի հետևանքով)։ Անգլիայում միայն իշամեղուներն են այցելում կարմիր երեքնուկին (որով և ապահովում են վերջինիս բարձր բերքը)։ Իսկ իշամեղուների թիվը երկրում զգալիորեն պայմանավորված է դաշտային մկների թվով։ Պարզվել է, որ վերջիններս, սնվելով իշամեղուներով, ոչնչացնում են դրանց բներն ու այդտեղ գտնվող խորիսխները։ Ուսումնասիրությունը ցույց է տվել, որ Անգլիայում իշամեղուների ավելի քան երկու երրորդը ոչնչանում է այդ ճանապարհով։ Իսկ մկների թիվը, ինչպես հայտնի է, էականորեն պայմանավորված է կատուների թվով։ Դիտարկումներից պարզվել է, որ գյուղերի ու փոքր քաղաքների շրջակայքում (կատուների առկայության պատճառով) իշամեղուների բներ ավելի շատ են հանդիպում, քան բնակավայրերից հեռու ընկած վայրերում։

Նման տիպի մի այլ օրինակ է բերում ամերիկացի հայտնի էկոլոգ Բ. Կոմոները (1977). այն վերաբերում է սնդիկի կերպափոխմանը, որն աղտոտում է շրջակա միջավայրը։ Օգտագործված էլեկտրական չոր մարտկոցն աղբի հետ ընկնում է աղբանոց, այնտեղից էլ՝ աղբայրիչ կայան։ Այստեղ սնդիկը տաքանում է, որի հետևանքով առաջանում են սնդիկի թունավոր գոլորշիներ, որոնք դուրս են գալիս կայանի ծխնելույզներից։ Քամին քշում տանում է այդ գոլորշիները, որոնք ի վերջո անձրևի կամ ձյան հետ իջնում են գետնին։ Ընկնելով, ասենք, ջրամբարները, սնդիկը խտանում և իջնում է ջրի հատակը։ Ջրամբարում եղած մանրէներն այդ նստվածքը վեր են ածում մեթիլացված սնդիկի։ Վերջինս լուծվում է ջրի մեջ։ Այն չի մասնակցում նյութերի փոխանակությանը։ Ձկները խմում են սնդիկով վարակված ջուրը. ժամանակի ընթացքում սնդիկը կուտակվում է ձկան տարբեր օրգաններում։ Ուտելով սնդիկով վարակված ձուկը, կամ օգտվելով այդպիսի ջրից՝ մարդիկ ստանում են սնդիկային թունավորում։ Ճապոնիայում լայնորեն տարածված «մինամատա» մահացու հիվանդության պատճառն այն է, որ մերձակա գետերը վարակվում են երկրի սնդիկի արդյունաբերության գործարանների թափոններից։

Բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը և շրջակա միջավայրի պահպանումը հնարավոր է բնական վերականգնվող ռեսուրսների վերարտադրության, դրանց խնայողաբար և կոմպլեքսային օգտագործման, ինչպես և արտադրության մեջ այնպիսի նոր տեխնոլոգիաների մշակման ու ներդրման եղանակով, որոնք բացառեին թափոնների ու մնացուկների արտանետումը շրջակա միջավայր։

Հասարակության և բնության փոխներազդեցությունը մարդկային գործունեության ամենակարևոր կողմերից մեկն է։ Կապիտալիզմի օրոք արտադրությունը հանգեցնում է տարերային, անկառավարելի, այդ իսկ պատճառով՝ վտանգավոր միջամտության բնությանը։ Միայն արտադրամիջոցների ու բնական ռեսուրսների հանրային սեփականության հաստատումն է հնարավորություն ընձեռում առավել նպաստավոր պայմաններ ստեղծելու մարդու և բնության արդյունավետ փոխներգործության համար։

Բնական հարստությունների պահպանումը և ռացիոնալ օգտագործումը սոցիալիստական տնտեսության զարգացման պարտադիր պայմանն են, որ արձանագրված է ՍՍՀՄ և ՀՍՍՀ սահմանադրություններում։

Ժողովրդատնտեսական պլանում շրջակա միջավայրի պահպանությունը համարվում է ժողովրդատնտեսական պլանի կարևոր պրոբլեմներից մեկը։ Հողերի, ընդերքի, անտառի, ջրային ռեսուրսների, մթնոլորտային օդի, կենդանական աշխարհի և այլնի պահպանության ու օգտագործման վերաբերյալ օրենքները բնության պահպանության իրավաբանական հիմքն են։ Զգալի աշխատանք է կատարվել քաղաքների և արդյունաբերական խոշոր կենտրոնների մթնոլորտային միջավայրի պահպանության նպատակով։ Այսպես, Մոսկվա քաղաքի մթնոլորտն ամենամաքուրն է նույնպիսի քանակությամբ բնակչություն ունեցող այլ քաղաքների համեմատությամբ։ Փոշեհատիկների և ծծմբային գազի

էկոլոգիա հունարեն բառ է և նշանակում է գիտություն կենդանիների բնակեցման վայրի մասին։ Է. Հեկելը էկոլոգիան ձևակերպեց որպես գիտություն, որն ուսումնասիրում է «կենդանու բոլոր տեսակի հաղորդակցությունները օրգանական և անօրգանական միջավայրի հետ»։ Հետագայում այդ բնորոշումը տարածվեց նաև բույսերի և ամբողջ օրգանական աշխարհի վրա։ Այժմ կենսաբանական գրականության մեջ էկոլոգիան սահմանվում է որպես գիտություն, որն ուսումնասիրում է կենդանի օրգանիզմների գոյության պայմանները նրանց բնակության վայրում և օրգանիզմների ու միջավայրի միջև գոյություն ունեցող փոխադարձ կապը։

էկոլոգիական գիտության զարգացումն ամենից առաջ առնչվում է հասարակության պրակտիկ պահանջների հետ։ Ժողովրդական տնտեսության կարևորագույն ճյուղերի՝ երկրագործության և անասնաբուծության, ձկնորսության, գազանաբուծության, որսորդության, անտառտնտեսության զարգացումն աղերսվում է էկոլոգիական գիտության հետ։ Անտառատնկումներն ու գյուղատնտեսական կուլտուրաների ագրոտեխնիկան, անասունների խնամքը, վայրի կենդանիների ապրելակերպը, ձկնորսության և որսորդության շահագործման կանոնավորումը և այլն կատարվում են էկոլոգիայի սկզբունքների հիման վրա։ Բերքի պահպանման, գյուղատնտեսության և պահեստային տնտեսությունների վնասատուների դեմ պայքարի գործը նույնպես հիմնված է էկոլոգիական գիտելիքների վրա։

Գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում խիստ բարդացան ու սրվեցին հասարակության և բնության միջև գոյություն ունեցող փոխհարաբերությունները։ Ինչպես հիշատակվեց, ամենուրեք ուժեղացավ մարդու ազդեցությունը բնության վրա, պայմանավորված, առաջին հերթին, բնական ռեսուրսների ինտենսիվ օգտագործմամբ։ Ընդհանուր էկոլոգիական գիտությունը, ուսումնասիրելով կենսաբանական օրինաչափությունները, չէր էլ կարող ընդգրկել ու լուծել մարդու և բնության միջև ներկայումս ծառացած բարդ հարաբերությունները։ Վերջին ժամանակներս էկոլոգիական գիտությունը մեծապես փոփոխվել է, ընդլայնվել է դրա ուսումնասիրման ոլորտը՝ ներգրավելով գիտության նորանոր ճյուղեր։ Էկոլոգիական պրոբլեմներն այժմ հանգամանորեն մշակվում են աշխարհագրագետների, տնտեսագետների, սոցիոլոգների, փիլիսոփաների, բժիշկների, կենսաբանների և այլ մասնագետների կողմից։ XX դարի 60—70-ական թվականներին «մարդու էկոլոգիան» ընդհանուր էկոլոգիայից առանձնացավ որպես ինքնուրույն գիտություն։ Այդ պայմանավորված է նրանով, որ, ի տարբերություն օրգանական մյուս ձևերի, մարդը, որպես բնական էակ, բնության մեջ զբաղեցնում է ուրույն տեղ։ Մարդն առաջին հերթին սոցիալական երևույթ է։ Սոցիալական ու մեթոդոլոգիական խոշոր սխալների է հանգեցնում մարդու էկոլոգիայի հարցերի քննումն ընդհանուր էկոլոգիայի շրջանակներում, երբ հավասարության նշան է դրվում մարդու և կենդանու միջև՝ որպես էկոլոգիական համակարգի համահավասար տարրերի։

Մարքս-լենինյան ուսմունքը հասարակության զարգացման մասին բացասում է մարդու և կենդանիների պոպուլյացիաների զարգացման օրինաչափությունների նույնացումը։ Մյուս կենդանական խմբավորումներից մարդու պոպուլյացիան տարբերվում է իր շրջապատի նկատմամբ ունեցած դոմինանտությամբ։ Մարդը էվոլյուցիոն զարգացման ընթացքում վերափոխում է իր շրջապատը, հարմարեցնելով այն իր նյութական ու հոգևոր պահանջներին, իսկ կենդանական աշխարհի էվոլյուցիան հիմնված է շրջապատի հարմարվողականության վրա։ Այս առնչությամբ Ֆ. Էնգելսը գրել է, որ կենդանին միայն օգտվում է արտաքին բնությունից և նրա մեջ փոփոխություններ է առաջացնում պարզապես միայն իր ներկայությամբ, իսկ մարդը իր հարուցած փոփոխություններով ստիպում է նրան ծառայել իր նպատակներին, իշխում է նրա վրա (տե՛ս Ֆ. Էնգելս, Աշխատանքի դերը կապկի մարդայնացման պրոցեսում, Ե., 1953, էջ 17)։



Մարդու էկոլոգիան իր ձևավորման շրջանում է։ Դեռևս վերջնականորեն սահմանված չէ դրա հստակ բնորոշումը, չնայած այն դարձել է գիտության ուրույն ճյուղերից մեկը։ Սակայն մարդու էկոլոգիային վերաբերող գիտական աշխատություններում հատուկ տեղ է տրվում շրջակա միջավայրի վիճակին։ Մասնավորապես արծարծվում են մարդկային հասարակության առողջության ապահովման և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հարցերը։ Էկոլոգիան, որպես գիտություն, նպատակ ունի կարգավորելու մարդու (հասարակության) փոխկապվածությունը շրջակա միջավայրի հետ, այսինքն՝ վեր հանելու բնական և վերափոխված (կուլտուրական) համալիրների զարգացման օրինաչափություններն ու առանձնահատկությունները, դրա հիման վրա կազմակերպելու մոլորակի ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը և պահպանելու շրջակա միջավայրի բարվոք վիճակը։

Մարդու էկոլոգիան, հիմնվելով բնական, հասարակական և տեխնիկական գիտությունների վրա, մշակում է բնական և վերափոխված համալիրների լինելիության, զարգացման օրինաչափություններն ու առանձնահատկությունները և դրա հիման վրա հանձնարարականներ տալիս մոլորակի ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և շրջակա միջավայրը անաղարտ վիճակում պահպանելու, դրանք մարդուն ծառայեցնելու համար։ Այլ կերպ ասած, մարդու էկոլոգիայի նպատակն է՝ գիտական հիմունքների վրա կարգավորել մարդու և բնության փոխներգործության օպտիմալացման պրոբլեմը։

# ՓՈՔՐԵՐԻ ԹԱՏՐՈՆԻ ՄԵԾ ԽՆԴԻՐՆԵՐԸ

**Ե. Ք. ՄԱՆԱՐՅԱՆ**
Երևանի Հովհ. Թումանյանի անվան պետական
տիկնիկային թատրոնի գլխավոր ռեժիսոր

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVI համագումարի փաստաթղթերում, ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ պատշաճ տեղ է տրված աճող սերնդի դաստիարակության, հոգևոր զարգացման խնդիրներին: Կուսակցության կանխագծումները հզոր ազդակ են հասարակական կյանքի բոլոր ոլորտներում աճող սերնդի ուժերն առավել ճշգրիտ ու ռացիոնալ օգտագործելու ասպարեզում:

Լենինյան կուսակցության ու սովետական կառավարության համար մատաղ սերնդի դաստիարակության հարցը միշտ էլ մեծ ուշադրության առարկա է եղել: Երեխաների կրթության և բարոյագեղագիտական դաստիարակության հարցն այսօր կենսական, առաջնակարգ կարևորության և մշտական հոգածության խնդիր է:

Երկրում մեծ է պետականորեն հովանավորվող այն օջախների ցանցը, որոնք դարբնում են մանուկների էսթետիկական դաստիարակության գործը: Առաջիններից մեկն այս համակարգում թատրոնն է: Սովետական Միությունում գործում են մեծ թվով պատանի հանդիսատեսի և տիկնիկային թատրոններ: Դրանց թիվն անցնում է 150-ից, չհաշված կուլտուրայի տներին ու համերգային միավորումներին կից և մանկապարտեզներում ու դպրոցներում գործող առանձին խմբերը և, վերջապես՝ հեռուստատեսությամբ հաղորդվող տիկնիկային ներկայացումները: Այստեղ հարկ է հիշատակել ամենափոքրերի թատրոնի կազմակերպչական մի առանձնահատկության մասին, որը մեծապես ընդլայնում է դրա ազդեցության ոլորտը և կարևորում դրա դերը: Յուրաքանչյուր տիկնիկային թատրոն, անհրաժեշտ փոխադրամիջոցով ապահովված լինելու դեպքում, վերածվում է մի շարք հեռավոր շրջանների ստացիոնար թատրոնի, ուր և պարբերաբար հանդես է գալիս հյուրախաղերով: Եթե մյուս թատրոնների համար հյուրախաղերի այսպիսի պարբերականությամբ հանդես գալը կապված է որոշակի բարդությունների հետ, ապա տիկնիկային թատրոնի համար այն անհամեմատ դյուրին է: Եվ, որ առավել կարևոր է, տիկնիկային թատրոնն ունի բոլոր անհրաժեշտ պայմանները՝ հյուրախաղերի ժամանակ գեղարվեստական որակի կորուստը, իր հիմնական բեմի համեմատությամբ, նվազագույնի հասցնելու: Այստեղից էլ պարզ է դառնում, թե ինչպիսի կարևորություն ունի տիկնիկային թատրոնների ցանցի ընդլայնումը մեր երկրի բազմամիլիոն մանուկ հանդիսականների պահանջները բավարարելու խնդրում:

Ավելորդ չենք համարում հիշատակել մեր հասարակության մեջ արմատավորված այն իրողության մասին, որ գեղագիտական դաստիարակությունն օրգանապես ձուլված է գաղափարաբարոյական դաստիարակության հարցերին և ինքնակա ու վերացական կիրառում չունի: Այդ երևույթը մեր հասարակարգի նվաճումներից է, լենինյան կուսակցության անդուլ ջանքերի արգասիքը:

Մեր երկրում լայնորեն տարածված են մանկական թատրոնների երկու խումբ— ամենափոքրերի թատրոնը՝ տիկնիկային և պատանիներինը: Տիկնիկային թատրոնների հանդիսականները հիմնականում հինգ տարեկանից մինչև չորրորդ դասարանցի երեխաներն են: Հետևաբար դրանք կոչված են ո՛չ միայն թատերական արվեստի միջոցով պրոպագանդելու, այլև հենց թատերական արվեստը, ավելի որոշակի արտահայտվելու համար ասենք՝ «թատրոնը» հասկացությունը պրոպագանդելու: Թերևս երբ խոսքը վերաբերում է ամենափոքրերին, «պրոպագանդել» արտահայտությունն այնքան էլ հարմար չէ, սակայն դրանից երևույթի էությունը չի փոխվում: Տիկնիկային ներկայացում հաճախող երեխան ո՛չ միայն սովորում է այն, ինչ բեմից ուսուցանում են տիկնիկները, այլև սովորում է «թատրոն հաճախել»:

Թատրոն... Բանական արարածի ստեղծած հրաշքներից մեկը, որի արմատները խորն են, և դժվար է գերագնահատել դրա բարերար ներգործության դերը մարդկային հասարակության կյանքում: Առաջին անգամ տիկնիկային ներկայացում հաճախող երեխան շփվում է այն հրաշքի հետ, որի արձագանքները նրա գիտակցության մեջ գալիս են դարերի խորքից: Եվ, այդուհանդերձ, մանկական այդ արվեստի օջախները, որպես մշտական գործող, պետության հովանավորությունը վայելող հասարակական հավաքատեղի, մեր բովանդակ երկրում ունեն առավելագույնը հիսունից-վաթսուն տարվա պատմություն:

Մեր հանրապետությունում այսօր գործում են երկու պետական տիկնիկային թատրոններ՝ Երևանում և Լենինականում: Կան նաև մի քանի ինքնագործ տիկնիկային կոլեկտիվներ, որոնք այժմ գեղարվեստական-գաղափարական առումով դեռևս չեն հաստատել իրենց լիիրավ ինքնությունը: Բացի այդ, արդեն մոտ երեք տարի է, որ հեռուստատեսության ստուդիան պարբերաբար ցուցադրում է տիկնիկային ներկայացումներ: Ցավոք, այս օղակը, որն իր բնույթի շնորհիվ ունի չափազանց մեծ լսարան, գտնվում է խիստ ցածր մակարդակի վրա, առավելապես գեղարվեստական առումով: Մի շարք տիկնիկային խմբեր են ելույթներ ունենում Հայհամերգի հովանավորության ներքո, նույնպես նեշող առավելությամբ գեղարվեստական ցածր մակարդակով: ՀՍՍՀ կուլտուրայի մինիստրության որոշմամբ՝ տասներկերորդ հնգամյակի ընթացքում պետական տիկնիկային թատրոններ կբացվեն նաև Կիրովականում ու Ղափանում: Ցանկալի է, որ հենց սկզբից այդ թատրոններն ունենան որակյալ կադրեր, գեղարվեստական բարձր մակարդակ, որով և պատշաճ ընդունելություն կգտնեն հասարակայնության կողմից:

Որո՞նք են այն խնդիրները, որոնց լուծման գործին կարող են մեծապես նպաստել «տիկնիկային թատրոն» անունը կրող, երեխաներին (և ո՛չ միայն երեխաներին) շատ հարազատ այս օջախները: Բերենք մի փաստ պատկերն ամբողջական ներկայացնելու համար: Այս տարվա մայիսին Երևանի Հովհ. Թումանյանի անվան տիկնիկային թատրոնը, որն ընդամենը վեց տարի առաջ է տեղափոխվել նոր շենք, կընդունի միլիոներորդ հանդիսատեսին: Թիվն ինքնին խիստ պատկառելի է, թեև ավելի մանրակրկիտ ուսումնասիրությունն ի հայտ է բերում մեր կազմակերպական աշխատանքներում տեղ գտած մի շարք լուրջ թերություններ: Իրականում խոսքը ոչ թե միլիոն տարբեր երեխաների մասին է, որոնցից յուրաքանչյուրը մեկական ներկայացում դիտած կլիներ, այլ միլիոներորդ հաճախման մասին, որի մեջ մեծ թիվ են կազմում այն երեխաները, որոնք մեր թատրոնի մշտական հանդիսատեսներն են իրենց «տիկնիկային» տարիքի ողջ ընթացքում: Իսկ թե որքան է այն երեխաների թիվը, որոնք իրենց այդ տարիքում ոչ մի տիկնիկային ներկայացում չեն դիտում, դժվար է ասել: Եվ ահա ստացվում է, որ թատրոնն իր ստանձնած պետական պարտավորությունների պլանը կատարում, հաճախ նույնիսկ գերակատարում է, սակայն իր առաքելությունը լիովին կատարած չի լինում:

Մեր թատրոնի առջև ծառացած թերևս ամենախոշոր և կազմակերպորեն ամենաաշխատատար պրոբլեմներից մեկն է այս, եթե ոչ կարևորագույնը այդ շարքում: Ճիշտ կլիներ Հովհ. Թումանյանի անվան թատրոնն իր սպասարկման ոլորտի առումով համարել հանրապետական: Դժբախտաբար, անցյալ տասնամյակները (թատրոնը 1985 թ. կբոլորի իր հիսուն տարին) այդ համբավն ու դերը չեն բերել նրան: Թումանյանի անվան տիկնիկային թատրոնը դժվարությամբ ընդգրկում է մայրաքաղաքի դպրոցների ընդհանուր թվի հազիվ մեկ երրորդը, մայրաքաղաքից ոչ ավելի, քան կեսժամյա հեռավորության վրա գտնվող շրջկենտրոններն ու գյուղական վայրերը և Ծաղկաձորի ու Հանքավանի պիոներական ճամբարները՝ ամառային արձակուրդների շրջանում: Չենք կարծում, թե սպասարկման շատ ավելի լայն ոլորտ ունենա նաև Լենինականի տիկնիկային թատրոնը:

Եվ ահա ստեղծվում է մի պատկեր, երբ հանրապետության մանուկ հանդիսատեսների խիստ մեծ տոկոսը կա՛մ ընդհանրապես տիկնիկային ներկայացումներ չի դիտում, կա՛մ դիտում է առանձին գործող խմբերի խիստ ցածրորակ ներկայացումներն ու հեռուստատեսությամբ ցուցադրվող տիկնիկային հաղորդումները, որոնք, ինչպես արդեն ասացինք, շատ հեռու են բարձրորակ լինելուց, էլ չասենք, որ հեռուստատեսային հաղորդումը, եթե անգամ այն գեղարվեստական ամենաբարձր որակն ունենա, այնուամենայնիվ, թատերական հանդիսություն չէ և մի շարք հարցերում չի կարող փոխարինել դրան:

Ի՞նչ է պակասում այդ թատրոններին իրենց գործունեությունը գեղարվեստական բարձր մակարդակով կազմակերպելու համար: Այս հարցի ամբողջական լուծումը ներթատերական իրավասության և հնարավորության սահմաններից դուրս է և անհրաժեշտաբար կարոտ է կուլտուրայի մինիստրության ամենալուրջ աջակցության: Ավելին, նույնիսկ Երևան քաղաքում մանուկ հանդիսականի սպասարկման գոյություն ունեցող մակարդակի արմատական

բարելավումը (իսկ դրա հրամայական պահանջը վաղուց արդեն կա) նույնպես դուրս է թատրոնի հնարավորության և իրավասության շրջանակներից: Խոսքը վերաբերում է տրանսպորտի միջոցներին և տեխնիկական հագեցվածությանը, առանց որոնց թատրոնը ո՛չ կկարողանա պարբերական շրջագայությունների մեկնել, ո՛չ իսկ տեղում, իր ստացիոնար բեմում դպրոցականների հաճախումների գործը նորմալ կազմակերպել:

Այս բոլոր հարցերը, սակայն, դրված են մի կողմի նժարում, մյուս նժարում գեղարվեստական մակարդակի ու վարպետության համահավաք հարցերն են, որոնք ո՛չ միայն ամբողջացնում են ներկայացման գաղափարական պատկերը, այլև բարոյագեղագիտական դաստիարակության խնդիրները՝ ընդհանրապես: Մատաղ սերնդին դաստիարակել հասարակության շահերին նվիրվածության, հայրենասիրության, ինտերնացիոնալիզմի ոգով, սերմանել հակակրանք կեղծիքի, ստի, երեսպաշտության հանդեպ, նրա բարոյական վարքագծի նորմերը դարձնել կոմունիստական համակեցության վեհ սկզբունքները. քաղաքացիական այս պաթոսով են համակված թատրոնի ողջ գործունեությունը, նրա խաղացանկը:

1979 թվականին Տաշքենդում կայացած համաշխարհային փառատոնում ջերմ ընդունելության արժանացավ մեր բեմադրած Անհայտ աքլորը ներկայացումը՝ ըստ Հովհ. Թումանյանի: Այս գողտրիկ ներկայացման մեջ փառաբանվում են անդավաճանությունը, կենսախնդությունը, քաջությունը: Ի դեպ, այս ներկայացումը կցուցադրվի ինչպես Հաագայի համաշխարհային փառատոնում, նույնպես և Կուբայում: Քաջության, ազնվության, անձնվիրության ներբողումն է Հազարան բլբուլը ներկայացումը (բեմադրող՝ Ե. Մանարյան): Մարդու առաքինի հատկանիշները, անձնազոհությունն են գովերգվում Թզուկի երգը (բեմադրող՝ Տ. Ջահալյան), քաղաքավարությունը, բարեկրթությունը, պարկեշտ վարվեցողությունը՝ Արջուկի և խոզուկի արկածները (բեմադրող՝ Ռ. Մարուխյան) ներկայացումներում: Տարիներ շարունակ տիկնիկային թատրոնի բեմից չի իջնում Ա. Գայդարի՝ հեղափոխության հերոիկայով տոգորված Ռազմական գաղտնիք ներկայացումը (բեմադրող՝ Մանյա Ասլանյան):

Չափազանց կարևոր է, որ սովետական հայրենասիրության, կոմունիստական բարոյականության նորմերը երեխային մատուցվեն ոչ որպես դոգմաներ, կանխորոշված պատվիրաններ: Ժողովուրդների եղբայրության գաղափարը մանուկ հանդիսատեսը պետք է նվիրական համարի ոչ այն պատճառով, որ նրան այդպես են սովորեցնում, որ նրանից այդ են պահանջում, այլ այն պատճառով, որ նրա գիտակցության կերպավորման առաջին իսկ փուլից այդ գաղափարի ատաղձն այդպիսին է եղել: Պետք է հասնել այն բանին, որ աշխատանքի նկատմամբ անմնացորդ նվիրվածությունն ու սկզբունքայնությունը անհատի համար պարտադիր լինեն ոչ այն պատճառով, որ նրանից այդ են պահանջում կոդեքսների հոդվածները, որ նրան այդ են սովորեցնում գեղարվեստական ու պրոպագանդիստական միջոցներով, այլ այն պատճառով, որ նա այլ կերպ մտածել ու գործել չի կարող: Բարոյագեղագիտական չափանիշներն անհատի օրգանական ամբողջությունը կկազմեն այն դեպքում, երբ դրանք հայտնագործած լինի նա ինքը՝ գիտակցության կերպավորման շրջանում:

Ինքնուրույնաբար բարոյագեղագիտական հայտնագործությունների հասնելու լավագույն ուղին գեղարվեստական ընկալումներն են: Իսկ գեղարվեստական ընկալումների ամենաբարենպաստ միջավայրը թատրոնն է, կինոդահլիճը: Այս տեսակետից մեծ տարբերություն կա կինոդահլիճի և հեռուստացույցի միջև և այդ տարբերության վերհանումը լավագույնս ընդգծում է թատրոնի առաջնային ու բացառիկ լինելը՝ որպես գեղարվեստական ընկալումների նպաստավոր միջավայր: Հեռուստատեսային էկրանը պասսիվ ներգործության միջավայր է ստեղծում: Պատահական չէ, որ երեխաներից շատերը, էկրանի վրա որևէ հետաքրքրական, գրավիչ և ուրախ հաղորդում տեսնելիս, էկրանի մոտ են կանչում ընտանիքի մյուս անդամներին, որպեսզի արհեստականորեն ակտիվ ներգործության միջավայր ստեղծեն: Ահա հենց այստեղ է թատերական հանդիսության մեծ առավելությունը: Թատրոնում ընկալումը տեղի է ունենում կոլեկտիվ ձևով: Լավ արարքի համար ծափահարում են բոլորը, կնշանակի այդ արարքը համընդհանուր հավանության է արժանի: Արատի վրա ծիծաղում, տխրում են բոլորը մեկտեղ, կնշանակի այդ երևույթը համընդհանուր պարսավանքի է արժանի: Եվ, որպես բացարձակ առավելություն կինոդահլիճի համեմատությամբ, բեմի վրա ծավալվող գործողությունը ներազդում է անմիջական շփման միջոցով: Երեխան գիտե, որ համարձակ աքաղաղը նկար չէ էկրանի վրա, այլ «կենդանի» տիկնիկ, որին ցանկության դեպքում կարելի է մոտենալ, շոշափել: «Ցանկության դեպքում»-ը ենթագիտակցական այն հզոր լծակն է, որ բնությունը շնորհել է բանական արարածին: Հիրավի, ենթագիտակցական այդ լծակն է գաղտնիքների գաղտնիքը, հենց այդ է այն մոգական հաղորդիչը, որով հուսած ընկալումները տարիների ընթացքում նստվածք են տալիս, ստեղծում այս կամ այն չափանիշի ատաղձը, ձուլվում անհատի գիտակցությանը և դառնում նրա ողջ կյանքի անբաժան ուղեկիցը, կերպավորում նրա բնավորությունը:

Պետք է ասել, որ թատերական գործի կազմակերպումը մեծ մասամբ անտեսում է այս նրբերանգների համախմբային կիրառումը, և դա սովորաբար լինում է ակամա: Ինչպես ասացինք, պլանային առաջադրանքների բարեխիղճ կատարումը հաճախ ստեղծում է այն պատրանքը, թե ամեն ինչ շատ լավ է ընթանում: Այդ վերաբերում է ո՛չ միայն հաճախումներին, ո՛չ միայն սպասարկման ոլորտի ընդլայնմանը, այլև, ամենից առաջ, խաղացանկը կազմելուն և ներկայացումների գեղարվեստական ներգործության եղանակների կատարելագործմանը, այսպես ասած՝ գեղարվեստական որակի բարձրացմանը: Նշենք, որ ամենափոքրերի թատրոնում միշտ չէ, որ խաղացանկի ու հասարակական խնդիրների փոխադարձ կապը դառնում է ուսումնասիրության առարկա, գործի կազմակերպման հիմնաքար: Մինչդեռ այդ պարտադիր է եղել միշտ, առավել ևս այժմ, երբ մեր հասարակությունն արդեն ներգրավված է խնդիրների կենսագործման մի ամբողջ տասնամյա շրջափուլի մեջ: Եվ, վերջապես, համարյա երբեք տեղի չի ունենում նաև թատրոնի դաստիարակչական առաքելության քննարկում ներկայացումների բովանդակության շրջանակից դուրս: Այս էլ թատերական գործի մյուս կողմն է, որի ճշգրիտ կիրառման բացակայությունն ի չիք է դարձնում կատարված աշխատանքը երբեմն ամբողջությամբ:

Թատրոնը կոլեկտիվ ուսուցիչ է, իսկ ուսուցչի սխալն անհամեմատ ավելի ներգործուն է և ճակատագրական, քան ծնողինը: Դժվար է հավատալ բեմից հրամցվող քաղաքավարության տարրական կանոնների անհրաժեշտությանը, եթե թատրոն հաճախելու ողջ պրոցեսը մի շարք հակոտնյա օրինակներ է մատուցում մանուկ հանդիսատեսին. դահլիճում պատշաճ կարգ ու կանոն չկա, նստարանները երբեմն անսարք վիճակում են, հերթապահները երբեմն կոպտում են, մեծահասակները չեն լսում մանկավարժին և շարունակում են նստած մնալ շարքերի կենտրոնում, խանգարելով ետևում նստած երեխաներին, դպրոցից թատրոն և թատրոնից դպրոց ճանապարհին ավտոբուսում ծայրահեղ նեղվածք լինելու պատճառով խախտվում են քաղաքավարության տարրական կանոնները և դեռ շատ այլ «մանրուքներ»... Դժբախտաբար, այս մանրուքները մանկական դյուրընկալ բնության դեպքում վերածվում են խոշոր թերությունների և ընդմիշտ պահ են տրվում նրա ընկալունակ հիշողությանը: Սակայն վնասը շատ ավելի մեծ է, քան կարելի է ենթադրել: Եթե իրականում տեղի է ունենում բեմից քարոզածի հակոտնյան, ապա այս դեպքում ամենամեծ հարվածն ստանում է երեխայի հավատը. ուրեմն կարելի է ասել մի բան և անել մեկ ուրիշ բան, եզրակացնում է նա: Եվ, քանի որ այս «դասը» տրվում է թատրոնում, որը, ինչպես ասացինք, ակտիվ ընկալման միջավայր է, անջնջելիորեն դրոշմվում է երեխայի գիտակցության մեջ:

Մանկական դաստիարակության կարևոր խնդիրներից է մատուցվող նյութի թեմատիկ ուղղվածությունը: Սակայն առավել կարևոր է գեղարվեստական կատարման ձևը, եղանակը: Դիդակտիկ շարադրանքն անհամեմատ ավելի նվազ ազդեցություն կարող է ունենալ, քան հետաքրքրաշարժ և էմոցիոնալ մատուցումը: Երեխայի հոգում աշխատանքի և կոնկրետ գիտելիքների նկատմամբ սեր հարուցելուն, հոգևոր ու մտավոր կարողությունների բացահայտմանը խթան հանդիսացող նյութը շատ ավելի մեծ տպավորություն կարող է թողնել, քան նույն այդ երևույթների դրական հատկանիշները բացահայտող դիդակտիկ նյութը:

Ուրախալի է, որ մեր հանրապետությունում հոգածու ուշադրության կենտրոնում են գտնվում մանկական թատրոնները և դաստիարակության մյուս օջախները: Ինչպես ասացինք, անելիքներն այս ասպարեզում շատ-շատ են, մեծ ու պատասխանատու են խնդիրները մանկական թատրոնների կոլեկտիվների, որոնք ակնկալում են համապատասխան մարմինների մշտական օգնությունը: Այդ են պարտավորեցնում հարազատ կուսակցության XXVI համագումարի որոշումները, որոնք մեր ժողովրդի բարեկեցության, հոգևոր վերելքի, մեր հայրենիքի ու հասարակության հետագա հզորացման ուղենիշն են, նրա ապագայի հենասյուները:

---

## Հավերժ կենդանի Լենինը

(Ծննդյան 111-ամյակի առթիվ)

# ԱՆՄՈՌԱՑ ՕՐԵՐ

*Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձի առնչությամբ մեր մամուլը նոր դրվագներ տպագրեց առաջնորդի կյանքի ու գործունեության տարեգրությունից: Ստորև հրապարակում ենք ևս մի հատված* «Вопросы истории КПСС» *ամսագրի 1980 թ. երկրորդ համարում զետեղված «Անմոռաց օրեր» հոդվածից, որի հեղինակն է 1914 թվականից ՍՄԿԿ անդամ Ե. Ռ. Լևիտասը:*

...ՊԼԵՆՈՒՄԻՑ ՀԵՏՈ ես զանգահարեցի ՌԿ(բ)Կ Մոսկվայի կոմիտեի քարտուղար Ալեքսանդր Ֆյոդորովիչ Մյասնիկովին և իրեն պատմեցի մեր որոշման մասին: Նա դրան հավանություն տվեց ու հանգամանալից խոսակցության համար մեզ առաջարկեց մասնակցել Մոսկվայի կոմիտեի գործադիր հանձնաժողովի նիստին:

Երբ սկսվեց հանձնաժողովի նիստը, Մյասնիկովը ինձ խնդրեց մանրամասնորեն շարադրել մեր որոշումը: Ես պատմեցի, որ շրջկոմի ընդլայնված պլենումում կոմունիստներն արտահայտվեցին զոհված ընկերների հիշատակը հավերժացնելու մասին: Եվ ավելացրի. որոշված է ստեղծել պալատ՝ Բլագուշե-Լեֆորտովոյի շրջանի աշխատավորության ուժերով:

— Մենք ամեն ինչ կանենք մեր ձեռքերով,— շեշտեցի ես:— Բայց միայն խնդրում ենք, որ Մոսկվայի կոմիտեն մեզ օգնի շինանյութերով:— Այնուհետև, դիմելով ներկաներին, ավելացրի.— Իսկ ձեզ բոլորիդ հրավիրում ենք մեր պալատի բացմանը եկող տարվա մայիսի 1-ին...

Վերջացնելով այդ հարցի քննարկումը, Մյասնիկովը մեզ ասաց, որ կուսակցության Մոսկվայի Կոմիտեն շրջանին ցույց կտա հնարավոր օգնություն և ավելացրեց, եթե մենք մայիսի 1-ին պալատի բացումը կատարենք, ապա նա կաշխատի գալ այդ արարողությանը Վլադիմիր Իլյիչի հետ միասին:

Ապագա պալատի համար մենք նախատեսել էինք վերանորոգել համարյա լրիվ քանդված Նիկոլյանսկայա (այժմ Տկացկայա) փողոցի № 15/26 երկհարկանի տունը: Նախատեսված էր ո՛չ միայն վերականգնել շենքը, այլև նորից անցկացնել ջուր, կոյուղի, կենտրոնական ջեռուցում, էլեկտրալուսավորում: Այդ բոլորից հետո հարկավոր էր կատարել մեծ ծավալի հարդարման աշխատանք: Այն ժամանակների համար այդ բոլորը այնքան էլ հեշտ գործ չէր: Բացի այդ պետք էր պլանավորել ընդարձակ բակ և այնտեղ կառուցել բաց բեմ՝ օժանդակ շինություններով:

Բոլոր աշխատանքները կատարում էին շրջանի աշխատավորները: Մարդիկ շինարարություն էին գալիս երեկոները ու կիրակի օրերը, աշխատում էին հսկայական ոգևորությամբ և, իհարկե, բացարձակապես անհատույց: Դժվար էր տրանսպորտի վիճակը, հաճախ շինանյութը բերելու կամ աղբը տեղափոխելու համար որևէ միջոց չէր ճարվում: Այդ դեպքում բանվորները իրենք էին լծվում սահնակներին կամ սայլերին:

Բոլորին հատկապես շատ ոգևորեց Մյասնիկովի այն խոստումը, թե պալատի բացմանը գալու է Լենինի հետ: Այդ մասին մենք տեղեկացրինք ամբողջ շրջանին, բանվորական ժողովներում ասացինք առաջնորդի հետ առաջիկա հանդիպման մասին, և ամենուր ի պատասխան լսում էինք.

— Պալատը կկառուցենք փառավորապես: Թող միայն մեզ մոտ գա Իլյիչը:

1920 թվականի ապրիլին պալատում աշխատանքներն ավարտվեցին, և այն շողշողում էր իր մաքուր լվացված պատուհաններով: Մենք հրավիրեցինք Մյասնիկովին գալ ու տեսնել:

Նա հաջորդ օրն իսկ եկավ Մոսկվայի կոմիտեի գործադիր հանձնաժողովի անդամների հետ: Ամեն ինչ խիստ բծախնդրությամբ նայեցին ու գոհ մնացին: Իսկ Մյասնիկովն ասաց.— Պետք է բացել բլագուշե-լեֆորտովոցիների համար Ստուպինսկու պահեստները: Թող նրանք այնտեղ ընտրեն ամենայն լավագույնը այդ առաջին բանվորական պալատի՝ զոհված ընկերների հուշարձանի համար:

Ստուպինսկու (նախկին տիրոջ ազգանունն է) պահեստներում պահպանվում էր մեծ քանակությամբ տարբեր տեսակի կահույք, որը թողել էին Մոսկվայից փախած հարուստները և այժմ պատկանում էր սովետական պետությանը: Մի քանի օր մենք այնտեղից տեղափոխում էինք սեղաններ, աթոռներ, զանազան հյուրասենյակային կահույք, գորգեր, սափորներ, նկարներ: Հետո այդ բոլորը դասավորում էինք, իրար հետ վիճելով, թե ինչպես կահավորել այս կամ այն սենյակը, որպեսզի ավելի լավ ու հարմարավետ լինի: Այս առթիվ նույնիսկ նկարիչ հրավիրեցինք:

Պալատի բացումը պետք է կայանար կեսօրին: Բայց բեմի առջևի հսկայական բակը լցվեց բանվորներով և նրանց ընտանիքներով: Շատերը եկել էին նախօրոք: Եկել էին Մ. Ի. Կալինինը, Վ. Պ. Նոգինը, ուրիշ ընկերներ: Սակայն ո՛չ Վլադիմիր Իլյիչը, ո՛չ Մյասնիկովը չկային: Մյասնիկովին հեռախոսով գտնելու իմ բոլոր փորձերը զուր անցան: Ավելի երկար սպասելն անկարելի էր, և մենք որոշեցինք միտինգն սկսել:

Ս. Ն. Պետրովը ձայնը տվեց Մ. Ի. Կալինինին: Ապա շնորհավորանքներով հանդես եկան Վ. Պ. Նոգինը, շրջանի տարբեր ձեռնարկությունների ներկայացուցիչներ: Հանդիսավոր մասից հետո սկսվեց համերգը— մեզ մոտ էին եկել Մոսկվայի մի շարք թատրոնների դերասաններ: Այն ժամանակ, երբ հույսներս կորել էինք, թե Լենինը կգա, հանկարծ լսվեցին բացականչություններ.

— Լենինը եկա՜վ, Լենինը եկա՜վ:

Իրոք ժամանեցին Վլադիմիր Իլյիչը, Մարիա Իլյինիչնան, Մյասնիկովը, Ծիվծիվաձեն: Նրանք անցան բեմի ետևի սենյակը: Ս. Ն. Պետրովն ինձ խնդրեց պատմել, թե ինչպես ենք մենք ստեղծել մեր բանվորական ակումբը: Վլադիմիր Իլյիչը ուշադրությամբ ինձ լսում էր, հարցեր էր տալիս: Երևում էր, որ նա շատ գոհ է մեր նախաձեռնությունից: Մենք ուզում էինք, որ Վլադիմիր Իլյիչը երկար մնար մեզ հետ, խնդրեցինք նրան հանդես գալ համերգի առաջին բաժնից հետո: Բայց նա ասաց.

— Ո՛չ, չեմ կարող, պետք է լինեմ ուրիշ տեղեր ևս: Եթե ցանկանում եք, որպեսզի ես հանդես գամ, ինձ խոսք տվեք անմիջապես այս համարից հետո:

Երբ ավարտվեց ջութակահարի ելույթը, և արտիստը իջավ բեմահարթակից, մենք Վլադիմիր Իլյիչի հետ բեմ դուրս եկանք, և ես հայտարարեցի.

— Ձայնը տրվում է Ժողովրդական կոմիսարների խորհրդի նախագահ ընկեր Լենինի՜ն:

Վերջին բառերը խլացան ծափահարությունների որոտում:

Վլադիմիր Իլյիչը սրտանց շնորհավորեց շրջանի աշխատավորներին՝ իրենց ուժերով բանվորական պալատ կառուցելու առթիվ, որը, ինչպես ինքն ասաց, շրջանում կդառնա կուլտուրական աշխատանքի օջախ: Եվ լավն այն է, շարունակեց Լենինը, որ առաջին բանվորական պալատը կկրի փառապանծ բոլշևիկ Վլադիմիր Միխայլովիչ Զագորսկու անունը: Եվ Վլադիմիր Իլյիչը սկսեց շատ ջերմորեն պատմել Զագորսկու մասին: Բակում խոր լռություն էր, հավաքվածները որսում էին Լենինի ամեն մի խոսքը:

Ապա մենք լսեցինք Վլադիմիր Իլյիչի բարի խոսքերը նաև մեր հասցեին. նա հավանություն տվեց շրջկոմի նախաձեռնությանը, ասելով, որ գիտե, թե պալատը կառուցելիս ինչպիսի դժվարություններ ենք մենք հաղթահարել: Ճառի վերջում Լենինը խոսեց ամբողջ աշխարհի աշխատավորության համար մայիսմեկյան տոնի նշանակության մասին: Երբ վերջացավ երկար օվացիան, Վլադիմիր Իլյիչը խնդրեց.

— Այժմ մեզ ցույց տվեք ձեր պալատը...

Շրջապատված շրջկոմի անդամներով ու իր հետ եկած ընկերներով, Լենինը դանդաղորեն շրջեց սենյակները, դիտեց պալատի կահավորանքը: Երբեմն մեզ գովում էր, երբեմն խորհուրդներ տալիս: Առանձնապես հետաքրքրվեց գրադարանով, այն ժամանակ տակավին փոքր և խիստ խայտաբղետ գրքերի հավաքածուով: Ես ասացի, որ մեզ համար շատ դժվար էր այն կոմպլեկտավորել, ձեռք բերել պետքական գրքեր:

Վլադիմիր Իլյիչը նայեց իր կողքից քայլող Մյասնիկովին և ասաց.

— Պետք է օգնել, պետք է օգնել...

Ալեքսանդր Ֆյոդորովիչը իսկույն պատասխանեց.

— Կօգնենք, Վլադիմիր Իլյիչ, անպայման կօգնենք...

Լենինը նաև մի քանի քննադատական դիտողություններ արեց, սակայն շատ բարյացակամորեն, նրբանկատորեն, կարծես խորհուրդ տալով: Նման դեպքում որևէ մեկիս մոտ վըրդովմունքի նշույլ անգամ չէր կարող ծագել: Հիշողությանս մեջ տպավորվել է, թե ինչպես, կանգնելով մի փոքրիկ նկարի առջև, Վլադիմիր Իլյիչը հարցրեց.

— Ասացեք, իսկ այստեղ ի՞նչ է պատկերված:

Նկարը ֆուտուրիստական էր, և մեզանից ոչ ոք չկարողացավ ասել, թե այնտեղ ինչ է պատկերված: Այդ ժամանակ Լենինը նկատեց.

— Ահա, տեսնո՞ւմ եք, ընկերներ, ձեզանից ոչ մեկը չգիտե, թե ի՞նչ է նշանակում այդ խըզմըզոցը: Կարիք չկա այս լավ պալատի պատերին ցուցադրել բոլորի համար անհասկանալի գործեր:

Վլադիմիր Իլյիչի հետ հանդիպումները երբեք չեն ջնջվի իմ հիշողությունից: Անչափ երջանիկ եմ, որ ինձ բախտ է վիճակվել տեսնել Լենինին, խոսել նրա հետ, լինել նրա մեծագործությունների ժամանակակիցն ու ականատեսը:

ծաղրել է Ֆրանսիան, որը գնդակահարեց կոմունարներին, ռուսական բռնակալների առջև քծնող բանկիրների Ֆրանսիան, որպես հանրապետություն առանց հանրապետականների» (ԵԼԺ, հ. 14, էջ 295):

Նույն ձևով առաջին բուրժուական հեղափոխությունը սարսափեցրեց մենշևիկներին, ենթարկեց մաշկափոխության՝ նետելով նրանց ռեակցիոն ճահիճը: «Ժամանակն է,— հեգնանքով գրում է Լենինը,— որ ծնվի մի նոր Շչեդրին, որպեսզի ծաղրի Վասիլևին ու մենշևիկներին, որոնք հեղափոխությունը պաշտպանում են հեղափոխականների «բացակայություն», հեղափոխության «բացակայություն» լոզունգի միջոցով...» (նույն տեղը, էջ 295—296):

Վ. Ի. Լենինին հիացրել է XIX դարի երգիծանքի հարձակողական բնույթը. այն, որ նրա ներկայացուցիչները ամենևին ինքնապաշտպանության չեն դիմել, հակառակը, միշտ գրոհել են ինքնակալության ամրոցների վրա, գիտակցել այն իդեալը, որի հաստատման համար նետվել են պայքարի հրապարակ: Նրանք դասակարգային իմաստ են հաղորդել իրենց երգիծանքին: Հեղափոխության առաջնորդը հաճախակի էր մատնացույց անում ռուս երգիծաբանների՝ ճշմարտությունն ասելու համարձակությունը: Այդ նա համարում էր նրանց բոցաշունչ հայրենասիրության ու քաղաքացիականության արտահայտություն: Իրոք, ինչպիսի՜ քաջություն էր պահանջվում Գոգոլից՝ պատմության դատաստանին ներկայացնելու «մեռած հոգիների» Ռուսաստանը: Անսահման մեծ քաղաքացիականություն էր պետք անմահացնելու համար շչեդրինյան բացասական հերոսներին: Ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, հայրենիքի հանդեպ ունեցած քնքուշ սիրուց են պոռթկացել Չերնիշևսկու հետևյալ կծու խոսքերը ռուս ժողովրդի մասին. «Խե՜ղճ ազգ, ստրուկների ազգ, վերևից մինչև ներքև՝ ամենքը ստրուկ են»: Մեծ հեղափոխական-դեմոկրատին խորապես դառնացնում էր ցարական բռնության նկատմամբ ռուս մուժիկի անտարբերությունն ու ստրկամտությունը: Եվ եթե նա ասում էր դառն ճշմարտությունը, ապա դրանով ո՛չ միայն չէր վիրավորում հարազատ ժողովրդի ազգային արժանապատվությունը, այլև արտահայտում էր իր անսահման նվիրվածությունը հայրենիքին ու ժողովրդին:

Հարձակվելով քաղաքական ու սոցիալական անարդարությունների վրա, ձաղկելով հասարակական արատներն ու թերությունները, ռուս երգիծաբան գրողները սթափեցնում էին ժողովրդական զանգվածների միտքը, լիցքավորում նրանց պայքարի ոգով: Լենինյան էսթետիկայում շեշտվում էր նրանց ստեղծագործությունների ժխտման պաթոսը, այն, որ դրանք եղել են դասակարգային պայքարի կարևորագույն դպրոցներից մեկը, ուր աշխատավոր մասսաները սովորել են ատելության գիտությունը, գիտակցել սոցիալական անարդարության պատճառները և ուղիներ որոնել լավագույն կյանքի հասնելու համար: Ինչպիսի՜ ոգևորությամբ էր Լենինը արձանագրում այն փաստը, երբ 1905 թվականի հեղափոխության տարիներին ժողովուրդը շուկայից տուն է տարել Բելինսկուն և Գոգոլին. մի հանգամանք, որ բորբոքել ու տակնուվրայել է կադետական մագրչակներին, լիբերալ ու պաշտոնական մամուլին: Եվ դա ոչ անհիմն: Նրանք այդ իրողության մեջ տեսնում էին մասսաների հեղափոխականացման վտանգը: Զուր չէ, որ բուրժուական գաղափարախոսները հատկապես սարսափել են Բելինսկու՝ Գոգոլին ուղղված հայտնի նամակից, որը Վ. Ի. Լենինը համարել է «անցենզուրային դեմոկրատական մամուլի... լավագույն երկերից մեկը»: Այդ նամակը սերունդներ է դաստիարակել, մտքեր հեղափոխականացրել, համակել ազնվականական-կալվածատիրական կարգերի նկատմամբ անհաշտվողականության ու ատելության ըմբոստ ոգով: Դա ռուս գրականության մեջ երգիծական ուղղության կրքոտ պաշտպանությունն էր, միաժամանակ սթափեցուցիչ խոսք՝ ուղղված գոգոլյան մոլորությունների դեմ: Ահա թե ինչու Լենինը, հակառակ կադետական «Վեխի» ողորմելի նվնվոցների, ողջունում էր Բելինսկու նամակի մասսայականացումը: «Ինչպե՜ս դա կզգաստացնի նրանց,— գրում էր նա,— ովքեր սենտիմենտալ կերպով էին նայում դեմոկրատիայի հարցերին, ինչպե՜ս դա կոփում է այն ամենը, ինչ որ կենդանի և ուժեղ է դեմոկրատիայի մեջ, անողոք կերպով դեն շպրտելով նեխած, ազնվականական-օբլոմովյան պատրանքները» (ԵԼԺ, հ. 22, էջ 106): Այս գնահատականը՝ տրված Բելինսկու հռչակավոր նամակին, ինքնըստինքյան Գոգոլի երգիծանքի բարձր արժեքավորումն էր:

Ռուս երգիծական ժառանգության նկատմամբ պրոլետարիատի մեծ առաջնորդի սիրո պայծառ արտահայտություններից էր նրա՝ երգիծաբան-գրողների սկզբունքային պաշտպանությունը լիբերալ պաշտոնական մամուլի թըշնամական հարձակումներից: Կարելի է բազմաթիվ քաղվածքներ բերել լենինյան էսթետիկայից, ցույց տալու համար, թե ինչպիսի բացառիկ նշանակություն է տրված անցյալի գրականությանը, այդ թվում և երգիծանքին, որը նա համարել է ռուսական կուլտուրայի մեծ հասումներից մեկը: Դասական երգիծանքի գընահատման հիմքում ընկած է սեփականատիրական հասարակարգերում երկու կուլտուրաների վերաբերյալ լենինյան հանճարեղ ուսմունքը:



Նախահեղափոխական դեմոկրատական երգիծաբանների մասին Վ. Ի. Լենինի հանճարեղ ասույթներն ու դիտողությունները ծրագրային նշանակություն ունեցան սովետական երգիծանքի զարգացման համար, նշեցին նրա գաղափարական-գեղարվեստական ֆունկցիաները սոցիալիստական հասարակարգում, առաջին պլան մղելով հին աշխարհից մնացած տըխուր ժառանգությունների՝ բյուրոկրատիզմի, կարիերիզմի, պաշտոնի չարաշահման, կաշառակերության, սեփականատիրական հոգեբանության և հակահասարակական այլ երևույթների դեմ ծաղրի ու ծիծաղի հզոր զենքով պայքարելու անհրաժեշտությունը: Թե որքան մեծ է երգիծանքի կարևորությունը կոմունիստական բարոյականության հաստատման խնդրում, ցայտուն երևում է Վլ. Մայակովսկու Ժողովամոլները գրոտեսկային բանաստեղծության լենինյան գնահատականում՝ տրված 1922 թ.: «Ռուսաստանը երեք հեղափոխություն է կատարել և, այնուամենայնիվ, օբլոմովները մնացել են, որովհետև Օբլոմով էր ո՛չ միայն կալվածատերը, այլև գյուղացին, և ո՛չ միայն գյուղացին, այլև ինտելիգենտը, և ո՛չ միայն ինտելիգենտը, այլև բանվորն ու կոմունիստը» (Երկեր, հ. 33, էջ 261): Քաղաքականապես երաշխավորելով այդ բանաստեղծությունը՝ Վ. Ի. Լենինը դրանում արտահայտված ծաղրը համարում էր ո՛չ միայն հին օբլոմովշչինան ոչնչացնող զենք, այլև վերագրում էր դրան լվանալու, մաքրելու, թափահարելու և քերելու հատկություն: Սովետական իրավակարգում երգիծանքը եղել և մնում է մեր ժողովրդի ու կուսակցության գաղափարական կարևոր զենքերից մեկը հասարակական կյանքից սոցիալիստական բարոյականությանը խորթ երևույթները արմատախիլ անելու, ինչպես և արտաքին թշնամիների ոտնձգություններին ջախջախիչ հակահարված հասցնելու գործում:

պաշտպանության գործում տիրող անկանոնությունը, հատկապես բնորոշ են նամակի եզրափակիչ խոսքերը, ուր նա գրում է, թե իշխանությունը բոլորովին պատրաստ չէ այն իրադարձություններին, որոնք կբերի իր հետ պատերազմի ավարտը, և որ կլինի այնպիսի մի հեղեղ, որն իր հետ կտանի ամեն ինչ: Այդ բառերը բնորոշ են հատկապես Գուչկովի շուրթերին:

Պիտերում ստացվել են Կ. 0.-ի 52, 53, 54, 55 համարները:

Ինչպես տեսնում եք, գործերը քիչ-քիչ առաջ են գնում, մնում է միայն արագ ապաքինվել և բոլոր ուժերով աշխատել:

Առհասարակ այս աշնանը ասես թե շատ են ամեն տեսակ գործերը: Վ[լադիմիր] Ի[լյիչը] այժմ տարված է շվեյցարական աշխատանքով և այդ առիթով նույնիսկ փոքր-ինչ կայտառացել է:

Դե՛, լավագույն ցանկություններս, ամուր սեղմում եմ Ձեր ձեռքը:

Բարևեք Կարլին, եթե նրան տեսնեք:

Վ[լադիմիր] Ի[լյիչը] բարևում է:

Ն. Կ[րուպսկայա]»*:

№ 9

«17/III [1917 թ.]

Թանկագին Կասպարյանց, շատ եմ ցավում, որ Դուք կրկին պառկել եք: Պետք է, որ մի քիչ խնայեք Ձեզ, մանավանդ, եթե Ռուսաստան մեկնելու հնարավորություն է բացվում: Բոլորովին միտք չունի այդպես սպառել իրեն գաղութի[1] գործերում: Ես կողմնակից չեմ «իմ գործը չէ» սկզբունքին, սակայն շատ էլ չեմ հիանում, երբ ավելի կարևոր գործերի պատրվակով հրաժարվում են նրանից, ինչ ձեռքի տակ է: Բայց, այնուամենայնիվ, պետք է գոնե հույսը չկորցնել և այդպես տրամադրության գերի չդառնալ: Հիմա այնքան էլ դժվար չէ խաղալ Ձեր խոր պատվազգացության հետ: Ներեցեք փնթփնթալուս համար: Գուցե և իրոք տվյալ դեպքում անհնար է հրաժարվել ելույթներից[2]: Դուք այդտեղ ավելի լավ եք տեսնում վիճակը: Թոշակից հրաժարվելը, իհարկե, երկրորդական բան է: Բայց հո չի կարելի ինչ-որ 50 ֆր[անկի] համար բերանը ստիպված փակ պահել: Փողի հարցը ի վերջո մի կերպ կկարգավորվի: Այսօր ուղարկում եմ 60 ֆր[անկ]: Այդ 60 ֆր[անկը] ընկերների կողմից է և քարտուղարության հետ ոչ մի առնչություն չունի:

Նամակի հարցում իրոք որ Ինեսան անհավատալի ժլատացել է. այսօր գրել եմ նրան, որ անպայման գրի ինձ և Ձեզ: Արդեն երեք շաբաթ է, եթե ոչ ավելի, նա ինձ նամակ չի գրել: Իհարկե, ներկա ժամանակներում խիստ դըժվար է նամակագրությունը, ուղղակի մարդ պետք է զոռով ստիպի իրեն նամակ գրել: Ասենք, ես էլ կարծես առհասարակ ուժասպառ եմ եղել և անհավատալի ծույլ եմ դարձել: Կարելի էր որոշ գործեր անել, բայց ինձ համար շատ դժվար է ապրել առանց մարդկանց, սովոր եմ ողջ կյանքում մարդկանց մեջ լինել, իսկ այստեղ շաբաթներով ոչ ոքի երես չես տեսնում, հատկապես այժմ: Հաջողացրի մի ամսում երեք անգամ անկողին ընկնել անիծյալ բրոնխիտից և գրիպից: Իլյիչը նույնպես մի շաբաթ պառկեց, այնպես որ մեր տունը կատարյալ հիվանդանոց է: Այնուամենայնիվ, նա կազդուրվել է և արդեն գրադարան է գնում: Դե՛, վերջացնում եմ, հարկավոր է դեռ մի երկու նամակ էլ գրել: Առայժմ ոչ մի նորություն: Ողջույններ Կարլին...

Ամուր սեղմում եմ ձեր ձեռքը՝

Ն. Կ[րուպսկայա]»*:

---

* *Տպագրվում է ըստ ձեռագրի, Ուղարկված է Ցյուրիխից Դավոս: ՏԵ՛ս Ն. տ., ֆ. 17, ց. 1, գ. 1900, թ. 1—3:*

1 *Այսինքն՝ Շվեյցարիայում հեղափոխական վտարանդիության համար կատարվող աշխատանքներում:*

2 *Չնայած իր հիվանդությանը, Վ. Մ. Կասպարովը եռանդով մասնակցում էր հեղափոխական աշխատանքներին և բոլշևիկյան կազմակերպական միջոցառումներ էր անցկացնում արտասահմանում ռուսաստանցի վտարանդիության շրջանում:*

* *Տպագրվում է ըստ մեքենագիր պատճենի: Ուղարկված է Ցյուրիխից Դավոս (ՏԵ՛ս Ն. տ., ց. 1, գ. 1404):*

Հ. Ն. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր



# ԱՆՎԵՀԵՐ ԿՈՄՈՒՆԱՐԸ

(Արսեն Ամիրյանի ծննդյան 100-ամյակի առթիվ)

Մ. Վ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ
Պրոֆեսոր



Արսեն Ամիրյանը պատկանում է համառուսաստանյան հեղափոխական շարժման այն ակտիվ բոլշևիկ գործիչների թվին, որոնք վիթխարի ծառայություններ են մատուցել աշխատավոր մասսաներին, մարտնչել ու զոհվել նըրանց լուսավոր ապագայի համար:

Արսեն Մինասի Ամիրյանը ծնվել է 1881 թ. նոյեմբերի 10-ին Բաքվում, որ և հիմնականում ապրել ու գործել է: Դեռևս գիմնազիայում սովորելիս՝ պատանի Արսենը ատելությամբ է լցվում տիրող կարգերի հանդեպ և տասնհինգ տարեկան հասակից տպագիր խոսքով արձագանքում հասարակական կյանքի երևույթներին: Նա 1899 թ. ընդունվում է Կիևի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը, որը, սակայն, չի ավարտում՝ ուսանողական հեղափոխական ելույթներին մասնակցելու համար 1902 թ. համալսարանից վտարվելու պատճառով:

Չնայած դրան՝ Ամիրյանի քաղաքական գործունեության ուղին եղել է բավականին բարդ: Սկզբնական շրջանում նա տարվել է դաշնակցության կեղծ-դեմոկրատական ֆրազեոլոգիայով և նույնիսկ մտել այդ կուսակցության շարքերը: Սակայն շուտով երիտասարդ հեղափոխականը համոզվում է, որ դաշնակցությունը հակաժողովրդական, բուրժուաազգայնական կուսակցություն է: Ռուսաստանի հեղափոխական շարժումների և հատկապես մարքսիզմի ազդեցության տակ նա աստիճանաբար թոթափում է դաշնակցության ազդեցությունը և ապա անողոք պայքար մղում նրա դեմ:

Ընդհանուր հեղափոխական իրադրության պայմաններում աստիճանաբար կազմալուծվում է դաշնակցությունը: Արդեն 1906 թ. նրանից անջատվում են «երիտասարդ դաշնակցականները», որոնց աչքի ընկնող ներկայացուցիչներից էր նաև Ա. Ամիրյանը: Ստ. Շահումյանը ողջունում է այդ պառակտումը, միաժամանակ նշելով, որ պետք է այն հասցնել մինչև վերջ: Ա. Ամիրյանը կանգնում է այդ իսկ դիրքի վրա: Նա նույն թվականին «Մրավյան» ծածկանունով լույս է ընծայում ժամանակն է սթափվելու գրքույկը, որտեղ ուրվագծվում է Ամիրյանի գործունեության հետագա ուղին,

բուրժուազիայի փեշերի տակ: Դրանով հան-
դերձ «սպեցիֆիկները» փորձում էին մարք-
սիստ ձևանալ, որպեսզի շահագործեն այդ վը-
սեմ անունը: Բոլշևիկներն անողոքաբար մեր-
կացրել են այդ փարիսեցիությունը և վճռական
պայքար մղել նրանց դեմ:

«Մեր մարքսիստանմանները» ծավալուն հոդ-
վածում Ամիրյանը խարազանում էր «սպեցի-
ֆիկներին», որոնք դարձել էին «մշակական սո-
ցիալիստներ»: Այդ նացիոնալ-սոցիալիստներին
(Բախշի Իշխանյան, Դավիդ Անանուն և ուրիշ-
ներ) Ամիրյանն անվանում է «հայ մարքսիս-
տանմաններ» և նրանց համեմատում ռուսա-
կան «լեգալ մարքսիստներ»-ի (Ստրուվե,
Տուգան-Բարանովսկի, Բուլգակով և այլոք)
հետ, որոնք փորձում էին մարքսիզմը հարմա-
րեցնել բուրժուազիայի շահերին. «Հետևելով
մեր մարքսիստանմանների դրույթներին, չի
կարելի չնկատել, որ նրանք մի առանձին բա-
վականությամբ ձգտում են «մարքսիստորեն»
արդարացնել և արդարացնել հատկապես բուր-
ժուական հասարակական հարաբերություննե-
րը»:

Ամիրյանը նշում է, որ մարքսիզմի համար
խիստ վտանգավոր են նրա քողարկված թըշ-
նամիները, ուստի պետք է անխնա մերկացնել
ու ջախջախել նրանց: Այդպիսիք էին նաև
«սպեցիֆիկները», որոնք «ձգտում են այսօր
միացնել մարքսիզմի մշակականության հետ»:
Այդ պարոնների «ենթարկումը» «Մշակ»-ին
«անդրադառնում է նրանց համար որպես պա-
տիվ և նյութական փարթամություն: Անձնական
տեսակետից պպ. մարքսիստանմանները, ի-
հարկե, չափազանց «խելոք» մարդիկ են:
Դրանք հանդիսանում են, Էնգելսի արտահայ-
տությամբ, «էժան մարքսիզմի շրջիկները», մա-
տերիալիստական վեհ ուսմունքի կեղծողները:
Չարժե ափսոսալ նրանց, բայց մերկացնել նը-
րանց անհրաժեշտ է»:

Ամիրյանն իր հոդվածներով խարազանում է
հայ իրականության մթնոլորտը թունավորող
բոլոր նացիոնալիստներին, մերկացնում հայ
իշխող դասերի այլանդակ բարքերը, նրանց
արտաքուստ փայլելու քաղքենիական ձգտու-
մը, գրավոր ու բանավոր խոսքում ամեն կերպ
օտար բառեր ու նախադասություններ գործա-
ծելու հավակնությունը, ազգանուններ փոխելը
և այլն:

Ամիրյանը հանդես է գալիս որպես պրոլե-
տարական ինտերնացիոնալիզմի անհողդողդ
մարտիկ և օգնում ժողովուրդների սոցիալա-
կան ու ազգային ազատագրման, նրանց եղ-
բայրական համերաշխության գործին:

1917 թվականի Փետրվարյան բուրժուադե-
մոկրատական հեղափոխության լուրը Ամիր-
յանն ստանում է Բաքվում և մեծ ոգևորությամբ
ողջունում ցարիզմի տապալումը: Նա եռան-
դուն աշխատանք է տանում Բաքվի բոլշևիկյան
ղեկավար խմբի մեջ և Ստ. Շահումյանի, Պ.
Ջափարիձեի, Մ. Ազիզբեկովի, Ի. Ֆիոլետովի
և ուրիշների հետ միասին ընտրվում բոլշե-
վիկյան կոմիտեի կազմում:

«Մոլեգին» Արսենի ամբիոնն ամենից առաջ
մամուլն էր, տպագիր խոսքը: 1917—18 թթ. հե-
ղափոխական մարտերում և հատկապես Բաքվի
կոմունայի ժամանակ տառացիորեն փթթում էր
Ամիրյանի տաղանդը: Հարկ է նշել, որ Ստ.
Շահումյանը և Բաքվի բոլշևիկյան կոմիտեն
ամբողջությամբ մեծ վստահություն ունեին Ա-
միրյանի ուժերի և հատկապես նրա գրական-
հրապարակախոսական ունակությունների հան-
դեպ: Միայն դրանով կարելի է բացատրել այն
փաստը, որ Ստ. Շահումյանին 1917 թ. հոկ-
տեմբերին «Բակինսկի րաբոչի» խմբագրի
մարտական պոստում փոխարինեց Արսեն Ա-
միրյանը, որը մինչ այդ ակտիվորեն աշխա-
տակցում էր թերթին:

Ակնհայտ է, որ «Բակինսկի րաբոչի»ն, որ-
պես Բաքվի բոլշևիկյան կոմիտեի օրգան, այ-
նուհետև էլ մնաց Ստ. Շահումյանի ընդհանուր
ղեկավարության ներքո: Սակայն իրողություն
էր, որ կուսակցական, քաղաքական, գաղա-
փարական աշխատանքի մի այդպիսի կարևոր
տեղամաս Ստ. Շահումյանը, Բաքվի կոմիտեն
հանձնարարեցին անձնվեր կոմունիստ ու մար-
տընչող մարքսիստ Արսեն Ամիրյանին:

Այդ պատվավոր ու պատասխանատու գոր-
ծում Ամիրյանը հանդես եկավ իր գիտելիքների
և ունակությունների ողջ զինանոցով: Նա
գրում էր պարզ ու հստակ լեզվով, միանգա-
մայն մատչելի ոճով, մարքսիստական խորա-
թափանցությամբ ու հեղափոխական մեծ ա-
վյունով, բոլշևիկյան սկզբունքայնությամբ: Ա-
միրյանի ամեն մի հոդվածը ոչ թե սոսկ խո-
սում, այլ ուղղակի կրակում էր պրոլետարիա-
տի թշնամիների վրա: «Բակինսկի րաբոչի»
թերթում տպագրված Ամիրյանի հոդվածները
մեծ մասամբ առաջնորդողներ էին և արծար-
ծում էին ծրագրային հարցեր: Նա միաժամա-
նակ աշխատակցել է բոլշևիկյան «Բանվորի
խոսք», «Տեղեկատու» և այլ թերթերին, որոնց
էջերում գրում էր ժամանակի կենսական խըն-
դիրների մասին: Ամբողջությամբ ձուլվելով
Բաքվի հերոսական կոմունայի հետ և ցուցա-
բերելով անհուն եռանդ, անհողդողդ կամք ու
արտակարգ ունակություններ՝ Ամիրյանն իր
ողջ գործունեությամբ մոբիլիզացնում էր աշ-
խատավոր մասսաներին ժամանակի կենսա-
խնդիրների լուծման համար: Նա դարձավ Բաք-



վի պրոլետարիատի սիրելի ու հարազատ գոր-
ծիչներից մեկը:

«Բակինսկի րաբոչի» թերթը կանգնած էր
սոցիալիստական հեղափոխության դիրքերում
և վճռական պայքար էր մղում տապալված
դասակարգերի ու նրանց գաղափարախոսների
դեմ: Այդ խնդիրների վերաբերյալ Արսեն Ա-
միրյանը հանդես եկավ մի շարք մարտական
հոդվածներով, որտեղ լուսաբանել է Հոկտեմ-
բերյան սոցիալիստական մեծ հեղափոխության
համաշխարհային պատմական նշանակությունը
և անողոքաբար մերկացրել բանվոր դասա-
կարգի ու աշխատավոր գյուղացիության թըշ-
նամիներին:

«Ինտելիգենցիայի մասին» մեծածավալ հոդ-
վածում Ամիրյանը ցույց է տվել, որ ցարական
ու բուրժուական կարգերի խորտակումը ող-
բում են ոչ միայն կալվածատերերն ու կապի-
տալիստները, նախկին ունևոր դասակարգերը,
այլև նրանց մսից ու արյունից ստեղծված մը-
տավորականությունը:

Ամիրյանը նշում էր, որ սովետական իշխա-
նության հաստատումից հետո պետք է անդու
կերպով ամրապնդել նոր կարգերը, իսկ դրա
գլխավոր նախապայմաններից մեկը անհաշտ
պայքարն է տապալված դասակարգերի լիկ-
վիդացման համար: Նա շեշտում էր, որ «կալ-
վածատերերն ու կապիտալիստները վերջի-
վերջո հարազատ եղբայրներ են այն ահավոր
թշնամու առջև, որի անունն է բանվոր դասա-
կարգ»: Այստեղից էլ այն մահացու սարսափը,
որ նրանք ապրում են Հոկտեմբերյան հեղա-
փոխության հաղթանակի և սովետական պե-
տության հանդեպ:

Եթե Հոկտեմբերյան հեղափոխությունը մի
կողմից կատաղեցրեց բոլոր երկրների շահա-
գործողներին, ապա մյուս կողմից բարերար
ազդեցություն ունեցավ ամբողջ աշխարհի աշ-
խատավորության վրա: Վերջինս ռուսական օ-
րինակով ոտքի է կանգնում և պայքար մղում
շահագործողական կարգերի դեմ: «Բանվորա-
կան հեղափոխությունը Արևմուտքում» առաջ-
նորդող հոդվածում Ամիրյանը ցույց է տալիս,
թե ինչպես ազատարար Հոկտեմբերի ազդեցու-
թյան տակ հեղափոխական շարժումները մեծ
թափ են առացել Ֆրանսիայում, Անգլիայում,
Ավստրո-Հունգարիայում, Գերմանիայում,
Ֆինլանդիայում և այլուր: Այդ նշանակում է,
որ ընդհանուր առմամբ հեղափոխությունը ծա-
վալվում է լայնությամբ ու խորությամբ, և ոչ ոք
ի վիճակի չէ կասեցնելու այդ առաջընթացը.
«Մենք՝ մարքսիստներս, միշտ էլ օպտիմիստ-
ներ ենք պատմության նկատմամբ և մեզ եր-
բեք հարկ չի եղել զղջալ: Մենք հավատում
ենք հեղափոխության հաղթանակին: Միայն
այդ դեպքում ժողովուրդները կհասնեն ազա-
տության ու իսկական խաղաղության: Սոցիա-
լիզմն ու խաղաղությունն անբաժանելի են ի-
րարից: Կոմունիստական կուսակցությունը
պայքարում է այդ վեհ նպատակների համար
և ժողովուրդներին առաջնորդում դեպի եր-
ջանկություն: Նրա իմաստուն ղեկավարն է
Վ. Ի. Լենինը, որին Ամիրյանն անվանում է
«մեր դարաշրջանի մեծագույն մարդը»:

Ամիրյանի բազմաթիվ հոդվածներ նվիրված
են անդրկովկասյան իրականությանը: Նա ան-
խընա մերկացնում է հեղափոխությունից հետո
երկրամասում ստեղծված Անդրկովկասյան կո-
միսարիատի և ապա սեյմի հակաժողովրդա-
կան քաղաքականությունը: Զբաղվելով Կով-
կասի ժողովուրդների վաճառքով և կատարե-
լով գերմանական ու թուրքական զավթիչների
կամքը՝ սեյմը 1918 թ. ապրիլի 9-ին հռչակեց
Անդրկովկասի «անկախությունը», որը նշանա-
կում էր երկրամասի անջատում Սովետական
Ռուսաստանից և նրա հանձնում օտարերկրյա
իմպերիալիստների հոշոտմանը: Ամիրյանը
ցույց տվեց, որ Անդրկովկասի այդ տխրա-
հռչակ «ինքնուրույնությունը» կլինի «կովկաս-
յան ժողովուրդների գլխապտույտ կործանման
սկիզբը»:

Նա հետևողականորեն պրոպագանդել է այն
գաղափարը, որ Կովկասի ժողովուրդների փըր-
կությունն ու ազատությունը պայմանավորված
են Սովետական Ռուսաստանի հետ ունեցած
սերտ կապերով: Ուստի, պետք է ամեն կերպ
օգնել երիտասարդ սովետական պետության
ամրապնդմանը: Ամիրյանն անարգանքի սյու-
նին է գամում անդրկովկասյան նացիոնալիստ-
ներին, որոնք ոչ միայն գործարքի մեջ մտան
օտարերկրյա իմպերիալիստների հետ, այլև
ամեն քայլափոխի փորձում էին վնաս հասցնել
Սովետական Ռուսաստանին: Նրանց ստոր
դավադրության հետևանքով 1918 թ. հունվա-
րին Շամխոր կայարանի մոտ կազմակերպվեց
կովկասյան ռազմաճակատից տուն վերադար-
ձող ռուս զինվորների ահավոր կոտորած:

Ամիրյանը հանդես է գալիս մի շարք մեր-
կացնող հոդվածներով («Պաշտպանողական-
ները Ելիզավետապոլի դեպքերի մասին»,
«Բացել սև խաղաթղթերը», «Ելիզավետապոլի
դեպքերը և հայ նացիոնալիստների քաղաքա-
կանությունը», «Պրովոկացիոն գրականություն»
և այլն), որոնց մեջ նա բացահայտում է այդ
ոճրագործության հանցավորների հրեշային
կերպարանքը: Շամխորի կոտորածը Ամիրյանն
անվանում է գիշերային ավազակների հարձա-
կում, դավաճանական գնդակ՝ արձակված թի-
կունքից:

Բայց ուժերն անհավասար էին և աստիճանաբար դրությունը բարդանում էր: 1918 թ. հուլիսի վերջերին Բաքուն շրջապատվում է թշնամիների կրակե օղակով:

«Բակինսկի րաբոչի»-ի № 148-ում լույս է տեսնում Ամիրյանի վերջին հոդվածը՝ «Ի՜ զեն» վերնագրով: Այնտեղ ցույց է տրվում, որ այս կրիտիկական պահին պետք է անհապաղ զենքի ուժով դիմել վճռական գոտեմարտի. «Հնչել է ժամը, երբ գործն արդեն չի կարող հապաղում հանդուրժել: Հնչել է ժամը, երբ բոլոր ազնիվ հեղափոխականները պետք է անհապաղ դիմեն զենքի՝ պաշտպանելու համար Բաքվի պրոլետարիատի հեղափոխական պատիվը... Ընկերներ, ո՞ւմ եք ուզում դուք անձնատուր լինել: Ծանր է այդ ասել: Ի՜ զեն, բոլոր ազնիվ պրոլետարներ»:

Վլադիմիր Իլյիչ Լենինը բարձր գնահատեց Բաքվի բոլշևիկների վարքագիծը: Նա նշեց, որ Բաքվի մեր ընկերները, դատապարտելով ու մերժելով իմպերիալիստների հրավիրման կործանարար քաղաքականությունը, ...ոչ թե խոսքով, այլ գործով սոցիալիստների համար միակ արժանի քայլն էին կատարել (տե՛ս Երկեր, հ. 28, էջ 9):

Չնայած Բաքվի պրոլետարիատի հերոսական դիմադրությանը՝ անհավասար մարտում, արտաքին ինտերվենցիայի և ներքին հակահեղափոխության հարվածների տակ 1918 թ. հուլիսի 31-ին Բաքվի սովետական իշխանությունը ժամանակավոր պարտություն կրեց: Օգոստոսի 1-ին կազմվեց «Ցենտրոկասպիի դիկտատուրա» հակահեղափոխական կառավարությունը: Ցրվեց Բաքվի սովետը, փակվեցին «Բակինսկի րաբոչի» և «Իզվեստիա» թերթերը: Ձերբակալվեցին Բաքվի պրոլետարիատի ղեկավարներն ու պատասխանատու աշխատողները: Նրանց մեջ էին Ստ. Շահումյանը, Պ. Ջափարիձեն, Մ. Ազիզբեկովը, Ի. Ֆիոլետովը, Գ. Կորգանովը, Գ. Պետրովը, Ա. Ամիրյանը, Ս. Հովսեփյանը, Պ. Զևինը, Ի. Մալիգինը և ուրիշներ:

1918 թ. սեպտեմբերին անգլո-էսէռական դահիճները Բաքվի 26 կոմունարներին տարան Անդրկասպյան ավազուտները և գազանաբար սպանեցին նրանց: Հերոսի մահով ընկած այդ մարտական կոհորտայի վերջին խոսքերն էին՝ «Մենք մեռնում ենք հանուն կոմունիզմի, կեցցե՛ կոմունիզմը»: Այդ նվիրական բառերի մեջ ամփոփված է նաև հեղափոխության խիզախ մարտիկ Արսեն Ամիրյանի լուսաշող պատկերը:

Բաքվի կոմունան, Լ. Ի. Բրեժնևի բնութագրմամբ, «հերոսության և անձնվիրության փառավոր էպոպեա էր» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 170): Նրա ակտիվ մասնակիցն էր Արսեն Ամիրյանը, ինչպես նաև նրա եղբայր Թադևոս Ամիրյանը, որոնք մարտնչեցին ու զոհվեցին հանուն աշխատավոր մարդու ազատագրման:

Անվեհեր կոմունար Արսեն Ամիրյանը համառուսաստանյան հեղափոխական ու բոլշևիկյան ականավոր գործիչ էր, պրոֆեսիոնալ ժուռնալիստ, բոցաշունչ հրապարակախոս: Նրա գրական-քաղաքական գործունեությունը նոր կյանքի տարեգրության փառավոր էջերից է: Բոլշևիկ-հեղափոխականի կյանքի ու գործունեության, նրա գրական ժառանգության ուսումնասիրությունը դաստիարակչական նշանակություն ունի աշխատավոր մասսաների, մասնավորապես՝ երիտասարդության համար: Սովետական մարդիկ վառ են պահում Արսեն Ամիրյանի անմար հիշատակը:

---

# ԱՆՄՆԱՑՈՐԴ ՆՎԻՐՈՒՄՈՎ

ԿԱՆ ՄԱՐԴԻԿ, որոնք իրենց ազնիվ գործով ու մարդկային հմայքով անջինջ ու լուսավոր հետք են թողնում ճանաչողների սրտերում: Նույնիսկ իրենց մահից հետո էլ, ասես, քայլում են ապրողների հետ, առհավետ մնում նրանց հիշողության մեջ: Այդպիսին էր կուսակցական-հասարակական երևելի գործիչ Վարդան Ավետիսի Ավետիսյանը, հայ սովետական պատմաբանը:

...Այդ օրը սովորականից մարդաշատ էր ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի դահլիճը: Վ. Ավետիսյանի ծննդյան 70-ամյակին նվիրված հուշ-երեկո էր, որին մասնակցելու էին եկել ֆիլիալի աշխատողները, հոբելյարի մանկության ու աշխատանքային ընկերները, այրին՝ տիկին Համիկը, հարազատներն ու բարեկամները: Եկել էին իրենց հարգանքի տուրքը մատուցելու գաղափարական կոմունիստի և վաստակավոր գիտնականի հիշատակին:

Հուշ-երեկոն ներածական ընդարձակ խոսքով բացում է ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի դիրեկտոր, պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Հ. Սիմոնյանը: Նա հանգամանորեն պատմում է Վ. Ավետիսյանի կյանքի անցած ուղու, կուսակցական-հասարակական, գիտական-մանկավարժական և ժուռնալիստական արգասավոր գործունեության մասին:

Բազմաբեղուն գործունեություն է ծավալել Վ. Ավետիսյանը 1932-ին Երևանի պետական համալսարանի դիպլոմն ստանալուց հետո: ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի հայկական ֆիլիալն է ղեկավարել երկար տարիներ և ՀԿԿ Կենտկոմի գիտության և բուհերի բաժինը, ՀԿԿ Կենտկոմի «Պարտիական կյանք» ամսագիրն է խմբագրել և ուսումնական հաստատություններում կուսակցության պատմություն ավանդել:

Տքնել ու տոկացել է գիտնականը, ու նրա բեղմնավոր գրչի տակից դուրս են եկել գաղափարապես հագեցած, տեսական համակողմանի վերլուծությամբ և գիտական խորությամբ օժտված բազմաթիվ աշխատություններ ու հոդվածներ, որոնք ճանաչվել են որպես հայ ժողովրդի պատմության և պատմակուսակցական գիտության արժեքավոր նմուշներ: Այդ առումով հատկանշական են «Մի էջ Հայաստանի բանվորական շարժումների պատմությունից», «Հայ հասարակական մտքի զարգացման մարքս-լենինյան փուլի սկզբնավորումը», Ստեփան Շահումյանի, Սուրեն Սպանդարյանի, Հայկ Ադամյանի կյանքի ու գործունեության լուսաբանմանը նվիրված աշխատությունները, պարբերական մամուլում հրապարակված բազում հոդվածներ:

Մարքսիստ պատմաբան-գիտնականի մտքի խորաթափանցությունը, տեսական մտածողությունը առավել ցայտուն կերպով են դրսևորվել «Հայ հասարակական մտքի զարգացման մարքս-լենինյան փուլի սկզբնավորումը» մենագրության մեջ («Հայաստան» հրատ., 1976): Հեղինակը, ինչպես նշվում է մենագրության համառոտագրության մեջ, փաստական նյութի հիման վրա լուսաբանում է Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածման սոցիալ-տնտեսական և քաղաքական նախադրյալները, ազգային-ազատագրական և բանվորական շարժման զարգացումը, սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների առաջացումը, նրանց պայքարը ազգայնական կուսակցությունների դեմ՝ հանուն համառուսական հեղափոխական շարժման, բոլշևիկյան կուսակցության շուրջը հայ պրոլետարիատի և բոլոր հեղափոխական ուժերի համախմբման, ցարիզմի, ազգային և սոցիալական ճնշումների դեմ մղվող պայքարում ընդհանուր հաղթանակի: Ընդ որում, նա պրոբլեմն ուսումնասիրում է այժմեականության դիրքերից: «Մարքսիզմ լենինիզմի գաղափարների տարածումը և պրոպագանդան,— նշում է հեղինակը,— բուրժուական և մանրբուրժուական գաղափարախոսության դեմ պայքարը միշտ էլ հանդիսացել են պրոլետարիատի կուսակցության առաջնակարգ խնդիրը: Այդ խնդիրը այժմ էլ կուսակցական աշխատանքի գլխավոր բովանդակությունն է» (էջ 3):

Անվանի պատմաբանը առանձնակի կրքոտությամբ է ձեռնամուխ եղել հեղափոխության հայ անկնուն մարտիկների՝ Ստ. Շահումյանի,

Ս. Սպանդարյանի և մյուսների, գործունեության արժեքավորմանը, յուրովի ու մարքսիստական դիրքերից բնութագրել նրանց տեղն ու դերը համառուսաստանյան պրոլետարական շարժման զարգացման, Անդրկովկասում մարքս-լենինյան գաղափարների տարածման գործում:

Հանգուցյալ պատմաբանի կյանքից, աշխատանքային ու հասարակական գործունեությունից հետաքրքրական դրվագներ պատմեցին նրա գործընկերները՝ թարգմանիչ Խաչիկ Աբեղյանը, գիտական աշխատող Գոհար Մանուկյանը, պատմական գիտությունների դոկտոր-պրոֆեսորներ Սամվել Ալիխանյանը, Մակիչ Արզումանյանը, պատմական գիտությունների թեկնածու Երվանդ Խալեյանը, պատմական գիտությունների դոկտոր, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահի տեղակալ Հովհաննես Բաղդասարյանը, մանկության ընկեր, գրող Գարեգին Բեսը: Նրանք բարձր գնահատեցին ոչ միայն Վարդան Ավետիսյանի ղեկավարի ու գիտնականի, մանկավարժի ու ժուռնալիստի լուրջ արժանիքները, այլև նրա մարդկային լավագույն հատկանիշները՝ ընկերասիրությունն ու հոգատարությունը մարդու նկատմամբ, շիտակությունն ու ազնվությունը, սկզբունքայնությունն ու օբյեկտիվությունը, պահանջկոտությունը իր և ուրիշների հանդեպ: Նա զուգակցում էր գիտնական-պատմաբանի և ղեկավարի հիմնական գծերը՝ քաղաքական զգաստ մտածողությունը, իրադարձությունների գնահատումը ոչ միայն այսօրվա, այլև գալիքի տեսանկյունից, մարդկանց ճիշտ գնահատումը՝ իրենց արժանիքներով ու թերություններով հանդերձ: «Նրա հետ կողք-կողքի աշխատողը,— ասաց Գ. Մանուկյանը,— իրեն զգում էր ուժեղ, հաստատ համոզված իր ընտրած ուղու ճշտության մեջ: Մեզ, սկսնակ գիտաշխատողներիս, բախտ էր վիճակվել հաղորդակից լինել այդ լավ մարդու անսպառ գիտելիքներին, որոնք այնքա՜ն շռայլորեն տալիս էր մեզ»:

Զեկուցման մեջ և ելույթներում կարմիր թելի պես անցնում էր այն միտքը, որ Վ. Ավետիսյանի կյանքն ու աշխատանքը լենինյան կոմունիստական կուսակցության գործին, սովետական հայրենիքին անմնացորդ նվիրումի ցայտուն օրինակ էր:

**Ա. Մ. ՍԱՔԱՆՅԱՆ**



Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՑԱՅԼՈՅԱՆ
Թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375033, Ереван-33, ул. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ **375033, Երևան—33, Բարեկամության 59 գ:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*Հանձնված է շարվածքի՝ 20.3.81—13.4.81: Ստորագրված է տպագրության 20.4.81: ՎՖ 04571: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ.: 9,4 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 16132: Պատվեր 656:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.

# *Նոր գրքեր*

Ն. ՏԻԽՈՆՈՎ— ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները: *Զեկուցում ՍՄԿԿ XXVI համագումարին 1981 թվականի փետրվարի 27-ին: «Հայաստան» հրատ., 1981:*

ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆ— Կուլտուրայի, արվեստի և գրականության մասին: *«Հայաստան» հրատ., 1981:*

Վիետնամի Սոցիալիստական Հանրապետություն: *«Հայաստան» հրատ., 1981:*

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— ՍՄԿԿ ագրարային քաղաքականության բնորոշ գծերը գիտատեխնիկական առաջադիմության պայմաններում: *«Հայաստան» հրատ., 1981:*

Լ. ԳԵՎՈՐԳՅԱՆ— Կոմունիստական գաղափարական համոզվածության դաստիարակումը: *«Հայաստան» հրատ., 1981:*

Մ. ՄԿՐՅԱՆ— Հովհաննես Թումանյանի ստեղծագործությունը: *Ե., «Սովետական գրող», 1980:*

Գ. ԱՃԵՄՅԱՆ— Մարիետա Շահինյանի հետ: *Գեղարվեստական ակնարկ: Ե., «Սովետական գրող», 1980:*

Արտաշես Արկադիի առաքելյան— *Նյութեր Հայկական ՍՍՀ գիտնականների կենսամատենագիտության: Ե., ԳԱ հրատ., 1980:*

Դ. ՍԱՀԱԿՅԱՆ— Պոլիտեխնիկական կրթության և աշխատանքային դաստիարակության խնդիրները: *Ե., «Լույս» հրատ., 1980:*

Գ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ— Աշխատուժի ծախսերի փոխհատուցման ձևերը սոցիալիզմի պայմաններում: *«Հայաստան» հրատ., 1981:*

Ռ. ՄԻՐԶՈՅԱՆ, Հ. ՄԱՐՈՒԹՅԱՆ— Տնտեսական մեխանիզմի կատարելագործումը: *Ե., ԳԱ հրատ., 1981:*

Գ. ՄԿՐՏՉՅԱՆ— «Հաղթանակ» սովխոզը: *«Հայաստան» հրատ., 1980:*

**В. И. Ленин, КПСС о контроле и проверке исполнения.** В двух томах. Т. 2. М., Политиздат, 1980.

Н. К. КРУПСКАЯ—**Страничка из истории Российской социал-демократической рабочей партии.** М., «Книга», 1980.

Ю. ШАРАПОВ — **Рукою Владимира Ильича.** О ленинских пометках на книгах, журналах и газетах. М., Политиздат, 1980.

**Рубежи великой эпохи.** Фотоальбом по мотивам произведений Л. И. Брежнева «Малая земля», «Возрождение», «Целина». М., «Планета», 1980.

М. ТРУНОВ—**Ленинские принципы кадровой политики партии.** М., Политиздат, 1980.

**Ленинский стиль в деятельности партийных организаций.** Коллективная монография. М., «Мысль», 1980.

**Партийный комитет и средства информации.** М., Политиздат, 1980.

**Мировой революционный процесс и современность.** М., «Наука», 1980.

И. УСАЧЕВ—**Международная разрядка и США.** М., «Мысль», 1980.

**Материалистическая диалектика.** М., Политиздат, 1980.

**Строки, рожденные поиском.** Экон. обозрения «Правды». М., «Правда», 1980.

**Рабочий класс и профсоюзы СССР.** Критика буржуазной и ревизионистской концепции. М., Профиздат, 1980.

**К единой цели.** Сборник. М., Политиздат, 1980.

**Коммунист.** 1981. Календарь-справочник. М., Политиздат, 1980.

**Мир социализма в цифрах и фактах.** 1979. Справочник. М., Политиздат, 1980.

Л. КОСТИН — **Рост производительности труда—основной фактор развития производства и повышения благосостояния народа.** М., «Мысль», 1980.

Գինը՝ 20 կ.
Индекс 77783

ISSN 0130—8114

# Գիտության և տեխնիկայի նորություններ

### ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ՕԳՆԱԿԱՆԸ

«ԱվտոՎԱԶ» միավորման ամենախոշոր գործարանում՝ Դիմիտրովգրադի ավտոագրեգատային գործարանի ձուլման արտադրամասում ռոբոտների միջոցով հավաքվել է ավտոմատացված հինգ կոմպլեքս։ Դրանց ներդրմամբ մեքենաշինարարները կարողացան կրկնապատկել մի շարք օպերացիաների արտադրողականությունը։ Ամեն մի կոմպլեքսի կազմում, տեխնոլոգիական ողջ շղթայի երկարությամբ, բանում են ձուլող մեքենան, ռոբոտն ու մամլիչը։ Դրանք կառավարում է մեկ մարդ։ Նա հետևում է իր էլեկտրոնային օգնականին, թույլ չտալով, որ նա շեղվի ծրագրավորված ռիթմից։ Միավորումում ստեղծվել է սեփական արտադրություն, ուր թողարկվում են միայն տարբեր սիստեմի մանիպուլյատորներ։ Այստեղ պատրաստված ռոբոտների առաջին խումբն արդեն գործում է Լենինգրադի ձեռնարկություններում։ Ոչ հեռու ապագայում ռոբոտները կկարողանան փոխարինել զոդողներին, դրոշմողներին, ներկարարներին, գուցե և մասնակցեն հավաքման մի քանի գործողությունների։

### ՀԱՎԱՔԱՐԱՐ ՄԵՔԵՆԱ

Անասնաբուծական խոշոր կոմպլեքսներում անասունների մսուրային խնամքի նեղ տեղերից մեկը շինության մաքրման մեքենայացումն է։ Զապորոժիե քաղաքի անասնաբուծության մեքենայացման և էլեկտրիֆիկացման կենտրոնական գիտահետազոտական ու նախագծատեխնոլոգիական ինստիտուտի մասնագետները նախագծել են ինքնագնաց ագրեգատ։ Այն շարժվում է թրթուրավոր անիվներով և վիթխարի փոշեծծիչի նման ներքաշում է ցանկացած խոնավության ու ձևի աղբ։

### ԲՈՒՅՍԵՐԸ ԱՌՈՂՋՈՒԹՅԱՆ ԳՐԱՎԱԿԱՆՆ ԵՆ

Ամենակատարյալ կլանիչն իսկ չի կարող մրցել այն բույսերի հետ, որոնք կլանում են ծխի հետ մթնոլորտ արտանետվող առողջության համար վնասակար գազը՝ ազոտի երկօքսիդը։ Վրաց բիոքիմիկոսները զննելով նիշակիր ատոմների ուղին՝ տերևից մինչև ծառի բունը, համոզվեցին, որ գազն այստեղ ամբողջովին կլանվում է։ Կանաչապատման մասնագետները վերանայել են Վրաստանի քաղաքների ծառատնկման պլանները։ Գիտնականներն առանձնացրել են ավելի քան 40 տեսակի կլանիչ բույսեր։ Սոճին, մայրին, խնձորենին, խաղողի վազը և կաղնին լավագույն կլանիչներ են։ Հետաքրքրական է, որ բույսերը որքան երկար են կատարում կլանիչի դերը, այնքան ավելի է բարձրանում դրանց պաշտպանունակությունը։

### ԿԵՐ՝ ԹԱՓՈՆՆԵՐԻՑ

Սլովացկի գիտությունների ակադեմիայի (ՉՍՍՀ) ընտանի կենդանիների ֆիզիոլոգիայի ինստիտուտում առաջարկել են անասունների համար ճեփից կեր պատրաստելու եղանակ։ Փայտի հիմնական բաղադրատարրը՝ ցելյուլոզան, հիանալի մարսվում է որոճողների ստամոքսում։ Սակայն ցելյուլոզային խառնված են այլ միացություններ, որոնք դժվարացնում են դրա մարսումը։ Նոր մեթոդով մշակված հաճարենու թեփի մարսողականությունը 5-ից հասել է 40 տոկոսի, այսինքն՝ գարու ծղոտի մարսելիության մակարդակին։ Լաբորատոր փորձերում ստացվել է ավելի բարձր մակարդակ՝ մինչև 50 տոկոս, ինչպես միջին որակի խոտինը։

Անտառային բարձրագույն դպրոցի աշխատակիցները մշակել են փայտյա մանրաթելի սալիկների գործարանի հոսքաջրերից կերամաթ ստանալու եղանակը։ Այժմ գործարանն ամեն տարի թողարկում է ավելի քան 6000 տոննա կեր, որն իր որակով չի զիջում շաքարի գործարանից ստացվող կերամաթին։